


*ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ*

*Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

Գարնան անուշ բույրով լցվեց
Դաշտը ցողոտ ու շաղոտ,
Երկրի վրա նորից բացվեց
Ջինջ, մայիսյան առավոտ:
Փողոց ելան պապ ու թոռնիկ
Նոր, տոնական շոր հագած,
Թոռը գարուն մի գեղեցիկ,
Պապը ձմեռ ճերմակած:
Վառ գարունը ձմռան թևին
Տնից ելավ ժպտալով.
Լայն փողոցով անցնում էին
Շարքեր, շարքեր ծփալով:
— Պապի՜, պապի՜, տե՛ս վերջ չկա…
Ինչքա՜ն շա՜տ են, ինչքա՜ն շա՜տ,
Այս ուտեղի՞ց այսքան նկար,
Այսքան դրոշ, այսքան մարդ:
— Նախշո՛ւն թոռնիկ, տոն է այսօր,
Մեկն է չքնաղ մայիսի,
Դուրս է եկել աշխատավոր
Ժողովուրդը հանդեսի:
Կարմիր հագած, արար-աշխարհ
Այսօր մայիս է տոնում,
Խաղաղության շարքերն անծայր
Ավելի են խտանում:
Կուռ շարքերն են անցնում խաղաղ,
Մարդիկ, ձուլված ուս-ուսի.
Ու գոչում է թոռնիկն ուրախ.
— Կեցցե՛ մեկը մայիսի:






*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 5

ՄԱՅԻՍ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ
ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՈՒԿՐԱԻՆԱԿԱՆ ԳՈՊԱԿ։ Կատարում են Երևանի Պիոներների պալատի պարի խմբակի անդամներ ԼՅՈՒԲԱ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԸ, ՄԵԼՍԻԿ ՍԱՐԳՍՅԱՆԸ և ԼԱՈՒՐԱ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԸ։

# Հարազատ ՈՒԿՐԱԻՆԱՅՈՒՄ

Ի. ԶԱՆՓՈԼԱԴՅԱՆ

Ֆոտոները՝ ՏԱՍՍ-ի

Գնացքը մոտենում էր Կիևին։ Վագոնի լուսամուտից երևում էին կոլտնտեսային մեծ ու շքեղ գյուղերը, սովխոզների և մեքենա-տրակտորային կայանների կառուցումները։ Զյան թավ ծածկոցը հեքիաթային, տոնական տեսք էր տալիս նրանց։ Վագոնում տաք էր ու հաճելի։ Եվ ինչպես հաճախ է լինում երկարատև ճանապարհորդության ժամանակ, բոլորն արդեն վաղուց ծանոթացել էին ու մտերմացել։

— Ուրեմն այդպես, առաջին անգամ ես գնում Կիև,— ասաց ալեհեր գնդապետ Սավչենկոն սևաչյա փոքրիկ աղջկան։ Այդ աղջիկը Երևանի Մայակովսկու անվան դպրոցի աշակերտուհի Լաուրա Պուչինյանն էր, որը ձմռան արձակուրդների ժամանակ գնում էր



ՈՒԿՐԱԻՆԱ։ Պիսարևի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտները չափում են դպրոցական ջերմոցի հողի ջերմաստիճանը։

Ուկրաինայի մայրաքաղաքը՝ Թենիսի սպորտային մրցումներին։

— Այո, ընկե՛ր գնդապետ...

— Ոչ թե գնդապետ, այլ քեռի Վասյա,— ժպտալով ուղղեց Սավչենկոն։

— Գիտե՞ք, քեռի՛ Վասյա,— փոքր ինչ շփոթված ասաց Լաուրան.— ես ուրախ եմ, որ վերջապես տեսնելու եմ հնադարյան քաղաք Կիևը։ Բացի այդ ես խոստացել եմ մեր պիոներական հավաքույթում պատմել Ուկրաինայում տեսած ամեն ինչի մասին։

— Կաշխատեմ օգնել քեզ,— ասաց Սավչենկոն և մոտեցավ լուսամուտին։— Տեսնո՞ւմ ես այս լայն դաշտերը։ Ամռանը այստեղ ոսկե ցորենի ծով է լինում։ Մինչև Սովետական իշխանությունը Ուկրաինայի բոլոր ցանովի հողերի կեսից ավելին կալվածատերերի ու կուլակների սեփականությունն էր։ Անցյալ դարի վերջում, ուկրաինացիները սկսեցին համառ պայքար մղել ցարական կարգերի ճնշումից ազատվելու համար։ 1903—1904 թվականներին Կիևում բնակվում էին Լենինի մայրը, եղբայրն ու քույրերը, որոնք մասնակցում էին այդ պայքարին։ Ռուս ժողովրդի օգնությամբ մենք, ուկրաինացիներս Սովետական իշխանություն հաստատեցինք։

Հետո գնդապետը պատմեց Հայրենական պատերազմի հերոս պարտիզանների մասին։

— Ուկրաինայի ազատագրության համար մեզ հետ միասին ուս-ուսի պայքարում էին Սովետական Միության վաթսուն ազգությունների ներկայացուցիչներ...

Լաուրան իմացավ, որ Հայրենական պատերազմի ընթացքում ուկրաինական ժողովուրդը տվել է Սովետական Միության հարյուրավոր հերոսներ. օրինակ՝ Սովետական Միության եռակի հերոս օդաչու Իվան Կոժեդուբը, կրկնակի հերոս պարտիզան Ալեքսեյ Ֆեոդորովը, պարտիզանական բանակի հրամանատար, կրկնակի հերոս Սիդոր Կովպակը...

Հենց որ Լաուրա Պուչինյանը հասավ Կիև, փողոցներում առաջին հերթին նկատեց այգիների, պուրակների, ծառերի առատությունը։

«Ինչքա՜ն ժողովուրդ կա այստեղ, ինչքա՜ն մարդ, ինչպիսի՜ ընդարձակություն», մտածում էր Լաուրան անցնելով Կրեշչատիկով՝ Կիևի գլխավոր փողոցով։ Այդ փողոցի մեջ-

*տեղի ծառուղիով սլանում էին տրոլեյբուսները։ Նրանք շատ էին։ Կիևի տրոլեյբուսային գիծը ունի ավելի քան 30 կիլոմետր երկարություն, իսկ տրամվայի գիծը՝ 150 կիլոմետր։ Քաղաքի վերին և ներքին թաղամասերը միացնում է ֆունիկուլյորը։ Կիևը Ռուսաստանում առաջին քաղաքն է, որտեղ 1892 թվականին անց է կացվել տրամվայի գիծ։*

*Աղջկան զարմացնում էր Կրեշչատիկի բազմահարկ շենքերի արտաքին տեսքը, որոնք պատած էին սպիտակ կերամիկայով։ Նրանցից շատերը զարդարված էին սյուներով և Կիևի համար բնորոշ՝ տանիքների վրա գտնվող աշտարակներով և սրածայր կառուցումներով։ Այստեղ կառուցվում էր ութ հարկանի մի նոր շենք։ Լաուրան իմացավ, որ այդ փողոցի ամենաբարձր տեղերից մեկում կառուցվելու է 20 հարկանի մի հյուրանոց, իսկ մինչև 1960 թվականը՝ 72 դպրոց, կուլտուրայի պալատ, երկու հազար տեղ ունեցող դահլիճ և շատ ուրիշ շենքեր։ Կիևում կա պիոներների պալատ և տաս պիոներական տուն. կան նաև մանկական տեխնիկական կայան, ագրո-բիոլոգիական կայան։*

*Լաուրա Պուշինյանն այցելեց Լենինի, Տարաս Շևչենկոյի թանգարանները, դիտեց հնադարյան ուկրաինական ճարտարապետության նշանավոր կոթող՝ Սոֆիայի տաճարը, որը կառուցվել է դեռևս 1037 թվականին։*

*Ահա և Վլադիմիրյան փողոցում գտնվող հրապարակը։ Մայրաքաղաքի ամենագեղեցիկ վայրերից մեկն է սա։ Հրապարակի շուրջը բարձրանում են բնակելի շենքերը, իսկ մեջտեղում գրանիտե մեծ պատվանդանի վրա խոյանում է մի ձիավորի կերպարանք. դա՝ Ուկրաինայի հավատարիմ զավակ, զորավար Բոգդան Խմելնիցկու հուշարձանն է։ Նա էր, որ իր ժողովրդին վերամիավորեց եղբայրական ռուս ժողովրդի հետ։ Նրա հայացքը ուղղված է դեպի հյուսիս, դեպի Մոսկվա, որտեղից ուկրաինական ժողովուրդը ազատություն ստացավ։ Այդ օգնությունը եկավ նաև 1943 թվականի նոյեմբերին, երբ սովետական զորքերը բանակի գեներալ Վատուտինի գլխավորությամբ ազատագրեցին Կիևը հիտլերյան զավթիչներից։ Սովետական իշխանության տարիներին Կիևը խոշոր արդյունաբերական կենտրոն դարձավ։ Իր մեծությամբ նա մեր երկրի երրորդ քաղաքն է։*

*Արդյունաբերության հզորությամբ Ուկրաինան գրավում է երկրորդ տեղը։ 1950 թվականին Ուկրաինայի ծանր արդյունաբերությունը երկու անգամ ավելի շատ արտադրանք տվեց, քան ամբողջ Ռուսաստանը 1913 թվականին։*



Սլավկի գյուղի դպրոցի ռադիոսիրողները եկել են դարբնի տունը ստուգելու իրենց դրած ռադիոընդունիչի աշխատանքը։

*Ուկրաինայում կան այնպիսի մեծ քաղաքներ, ինչպես Խարկովը, Օդեսան, Ստալինոն։ Այդ քաղաքներում զարգացած արդյունաբերություն կա, որի արտադրանքը արտահանվում է ռեսպուբլիկայի սահմաններից շատ հեռու։*

*Օդեսան մեր երկրի գեղեցիկ քաղաքներից մեկն է. նա գտնվում է Սև ծովի ափին։ Օդեսայի հսկայական նավահանգիստը միշտ լիքն է երկրագնդի ամենահեռավոր անկյուններից եկած նավերով։ Այստեղից հեռավոր Անտարկտիդա մեկնեց «Սլավա» սովետական կետորս նավը և ուրիշ շատ նավեր։*

*Հզոր ու ջրառատ է Դնեպր գետը։ Դնեպրի սահանքներում է կառուցված Եվրոպայի խոշորագույն էլեկտրակայանը՝ Դնեպրոգէսը։ Այժմ Դնեպրի վրա կառուցվում է մի նոր հիդրոկայան։ Նա ամեն տարի տալու է մեկ միլիարդ երկու հարյուր միլիոն կիլովատ էլեկտրաէներգիա։*

Սքանչելի տեսարան են ներկայացնում կոլտնտեսությունների ոսկեզօծ դաշտերը: Այնտեղ աճում է ամեն ինչ. թե՛ ցորեն, թե՛ հաճար, թե՛ բամբակ, թե՛ ճակնդեղ, որից շաքար են պատրաստում: Ուկրաինայում շաքարի բազմաթիվ գործարաններ կան: Կոլտնտեսային բարեբեր արտերում աշխատում են երկրով մեկ փառաբանված մարդիկ՝ Պաշա Անգելինան, Ելենա Խոբոտան և ուրիշներ: Այժմ այնտեղ Սոցիալիստական Աշխատանքի 1000 հերոս կա:

Սովետական իշխանության օրերին ավարտվեց Ուկրաինական հողերի միավորումը: Վերջերս Սովետական կառավարությունը Ուկրաինային հանձնեց Ղրիմի մարզը:

Ղրիմի թերակղզին կոչում են Սևծովյան ափերի մարգարիտ: Գեղատեսիլ լեռները, որոնք շրջապատված են հենց ծովի ափով ձգվող կանաչ հարթավայրերով, հրաշալի տեսք են տալիս թերակղզուն: Ղրիմի հսկայական լեռները, որոնք որոշ տեղերում կախված են կապույտ ծովի վրա, հարուստ են երկաթի հանքով և ուրիշ օգտակար հանածոներով: Սքանչելի կլիման և բուժիչ հանքային ջրերը Ղրիմը դարձրել են աշխարհի ամենալավագույն առողջարաններից մեկը: Այստեղ գտնվող նշանավոր պիոներական ճամբարում՝ Արտեկում ամեն տարի հանգստանում և առողջանում են հազարավոր պիոներներ:

Այսպես, տարեց-տարի ավելի հարստանում ու գեղեցկանում է Սովետական ծաղկուն Ուկրաինան:

ԱՄՊՐՈՊ

Գ. ՊՈՎՈԼՈՑԿԻ

Շարժվեց ահա ամպը հսկա
Ու երկինքը ծածկեց իսկույն:
«Անձրև կգա, անձրև կգա»—
Ձայն է տալիս որոտն հուժկու:
Ուրախացան դաշտ ու պուրակ,
Հրճվեց ծարավ հողը անծայր,
Վրա հասավ ամպրոպն արագ,
Անձրև տեղաց զով ու վարար:
Հոխորտում է որոտն ահեղ,
Փայլակն երկինքն է ակոսում,
Հորդ անձրևն է դառնում հեղեղ,
Լայն գետի պես առաջ հոսում:
Հանկարծ սուրաց-եկավ քամին,
Դարան մտավ՝ աչքը ամպին,
Երկինք թռավ նետի նման,
Ծվեն-ծվեն արեց նրան:
Պարզ երկնքից ահա սիրով
Արևն է մեզ ժպտում էլի:
— Վարա՛ր անձրև, գնաս բարով,
Բերք կստանանք մենք լիուլի...

Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

ԴՊՐՈՑՈՒՄ

Օ. ԴՈՆՉԵՆԿՈ

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ

Անդրեյ Շվեցը, կլոր այտերով մի ռուս տղա, պատուհանի մոտ նստած, խնդիր էր լուծում: Նա արդեն տետրի մի ամբողջ էջ լցրել էր թվերով, սակայն ոչինչ չէր ստացվում:

Փողոցով անցնում էր Սերգեյ Դեմիդենկոն՝ Անդրյուշայի դասընկերը. նրա ձեռքին թղկենու դեղնած տերևների մի մեծ փունջ կար:

«Այդ ո՞ւր է գնացել,— նախանձով մտածեց Անդրյուշան,— երևի կոլտնտեսության գրոսայգին: Ի՜նչ երջանիկ է. բոլոր դասերը հավանաբար արդեն պատրաստել է: Խնդիրներն էլ լուծած կլինի»:

Սերգեյն անցավ Անդրյուշայենց տան մոտով, նայեց պատուհաններին: «Տուն գընաց,— մտածեց Անդրյուշան,— հիմա կնստի և որևէ հետաքրքիր գիրք կկարդա»:

Փոքրիկ տղան բռունցքները սեղմեց քունքերին և կրկին խորասուզվեց խնդրի լուծման մեջ: Սակայն գործը գլուխ բերել չէր կարողանում:

Անդրյուշայի գլխում նոր միտք ծագեց: Նա նույնիսկ տետրն ու մատիտը մի կողմ

դրեց։ «Իսկ եթե Սերգեյի մոտ գնա՞մ։ Ի՜նչ լավ կլիներ, եթե նա ինձ բացատրեր, օգներ»։

Ճիշտ է, երրորդ դասարանցիներն այնքան էլ չեն սիրում Սերգեյին։ Նա թեև գերազանցիկ է, բայց ընկերներին երբեք չի օգնում, երբեք չի բացատրում ո՛չ կանոնները, ո՛չ տնային աշխատանքները։

— Պիոները պետք է լավ ընկեր լինի,— դիտողություն արեց ջոկատավարուհին։— Իսկ դո՞ւ, դու միայն քո մասին ես մտածում։

Սերգեյը կարմրեց և խոսք տվեց, որ կուղղվի, բայց շուտով իր խոստումը մոռացավ։ Անդրյուշան այդ բոլորը գիտեր։ Սակայն շատ էր ուզում, որ Սերգեյն իրեն օգներ։

Երբ նա Սերգեյի մոտ եկավ, սա իրոք գիրք էր կարդում և միայն ձեռքը թափ տվեց.

— Մի՛ խանգարիր։ Տեսնում ես, որ կարդում եմ...

Անդրյուշան բորբոքվեց.

— Ահա թե դու ինչպիսին ես։ Չէ՞ որ ես ու դու նույն նստարանին ենք նստում։

Սերգեյը փնչաց.

— Նույն նստարանի՜ն... Հետո՞ ինչ։ Սրա՛ն տես։ Լավ, լավ առավոտյան, դասից առաջ տետրս կտամ՝ կարտագրես։

— Արտագրել չեմ ուզում. բացատրի՛ր։

— Լավ, կբացատրեմ,— քրթմնջաց Սերգեյը,— միայն թե վաղը. իսկ հիմա ինձ մի՛ խանգարիր։

Սակայն մյուս առավոտյան էլ չբացատրեց։ Անդրյուշան Սերգեյից վիրավորվեց։

Բայց մի քանի օր հետո Սերգեյը դպրոց չեկավ։ Հետևյալ օրը նույնպես չեկավ։

— Դեմիդենկոն ծանր հիվանդացել է,— հայտնեց Օլգա Մատվեևնան,— երեկ տարել են հիվանդանոց։

Դասարանում քար լռություն տիրեց։ Իսկ Անդրյուշան առանձնապես սուր զգաց Սերգեյի բացակայությունը։

Անցավ մի ամիս, երկու ամիս, իսկ Սերգեյը դեռևս պառկած էր հիվանդանոցում և ոչ ոքի թույլ չէին տալիս նրան այցելելու։

Սերգեյի տեղը էլի դատարկ էր մնում։ Եվ Անդրյուշան ամեն անգամ, դասարան մտնելուն պես իսկույն իր նստարանին էր նայում. հո չի՞ եկել ընկերը։ Վերջապես լուր ստացվեց, որ Սերգեյն առողջացել է, նրան արդեն տուն են տարել։ Բժիշկները, իհարկե, առայժմ թույլ չէին տալիս, որ նա դպրոց հաճախի։

Ամբողջ դասարանն ուրախացավ։ Թեև Դեմիդենկոյին պարծենկոտ էին համարում, թեև միշտ չէ, որ նա լավ ընկեր էր, բայց



Անդրյուշայի գլխում նոր միտք ծագեց։

բոլորն էլ գոհ էին, որ առողջացել է։ Եվ մի օր Անդրյուշան ասաց.

— Սերգեյը շատ է ետ մնացել։ Դժվարությամբ կհասնի դասարանին։ Եկե՛ք օգնենք։

Բոլոր պիոներներն էլ սիրով համաձայնեցին։

Երբ Անդրյուշան դասարանից դուրս էր գալիս, ջոկատավարուհի Վալյան նրան կանգնեցրեց։

— Ո՞վ քեզ խորհուրդ տվեց, որ Սերգեյին օգնեք,— հարցրեց նա։

— Ոչ ոք, ինքս մտածեցի,— պատասխանեց Անդրյուշան։

Ջոկատավարուհին ձեռքը դրեց տղայի ուսին և մեղմ, հուզված ձայնով ասաց.

— Դու լավ ընկեր ես... Մի՛շտ այդպիսին եղիր:

Սերգեյի մոտ գնացին երեքով՝ ջոկատավարուհին, Անդրյուշան և Նատաշա Դորոշուկը: Նատաշան իր հետ վերցրել էր իր աճեցրած ծաղիկները՝ ծաղկամանով:

Սպիտակին էին տալիս տների կտուրները և ձյունով ծածկված ծառերը: Կոմերիտականները ակումբի կտուրն էին մաքրում, իսկ բարդու ճյուղին նստած սև ագռավը բարձրաձայն կռավում էր՝ ղա՜, ղա՜, ղա՜...

Դուռը բացեց Սերգեյի մայրը՝ կոլտնտեսության կթվորուհին:

— Նե՛րս եկեք, նե՛րս եկեք,— ուրախացած ներս հրավիրեց նա:

Առաջինը շփոթվելով ներս մտավ Անդրյուշան:

Սերգեյը ծնկները գրկած՝ նստած էր մահճակալին: Հյուրերին տեսնելով, անչափ ուրախացավ:

— Օ՜,— ձայն տվեց նա,— Անդրյո՛ւշա, Նատա՛շա, Վա՛լյա:

Հիվանդության ընթացքում նա շատ էր գունատվել և թվում էր, թե մեծացել է:

— Ա՛յ, մենք... եկանք քեզ մոտ,— սկսեց Անդրեյը:— Ի՞նչ լավ է, որ առողջացել ես...

— Սա քեզ,— ծաղիկները մահճակալի կողքի սեղանին դնելով, ասաց Նատաշան:

Հետո Անդրյուշան պատմեց այն մասին, որ իրենք որոշել են օգնել Սերգեյին:

— Այդ ձևով ավելի շուտ կհասնես դասարանին,— ասաց նա,— թե չէ մեն-մենակ դժվար կլինի: Մենք արդեն շատ բան ենք անցել:

Սերգեյը լուռ լսում էր: Նա ինչ-որ բան էր ուզում ասել, բայց ոչինչ չասաց և հանկարծ դեմքը ձեռքերով ծածկեց:

Անդրյուշան, Նատաշան և ջոկատավարուհին հասկացան, թե տղան ինչու է անհարմար զգում:

— Ախր ես... ձեզ երբեք չեմ օգնել...— մրմնջաց նա արտասվելով:

Անդրյուշան մոտեցավ ընկերոջը, գրկեց նրա ուսերը և կամացուկ ասաց.

— Դա անցած-գնացած բան է, Սերյո՛ժա, հիմա ամեն ինչ լավ կլինի: Դու էլի ինձ հետ նույն նստարանին կնստես, այնպես չէ՞...

Սերգեյը ձեռքերը դեմքից հեռացրեց և երախտագիտությամբ լի վառվռուն աչքերով նայեց իր բարեկամներին:

Սենյակը խաղաղ էր, և միայն պատի մեծ ժամացույցն էր Սերգեյի գլխավերևում չխչխկում, կարծես ասելով.

— Լավ կլինի, թի՛կ-թա՛կ, լավ կլինի, թի՛կ-թա՛կ...

## ՆՈՐ ԶԳԵՍՏԸ

Պ. ՎՈՐՈՆԿՈ

Մեր փափկամազ կատվի համար
Սիրուն շորեր առա համար.
Ես սանրեցի բեղն ու մազը.
Այնքա՜ն լավն է նոր տարազը:
Ո՞նց հագցնեմ իմ փիսիկին,
Ո՞ւր թաքցնեմ պոչն ահագին:

## ՈԶՆԻՆ

Ա՜յ քեզ հրաշք, ա՜յ զարմանք՝
Մայրիկ ոզնին խորամանկ,
Կարեց փշե մի պիջակ,
Ո՛չ կապ ուներ, ո՛չ կոճակ:
Ինչ որ գտավ ծառի տակ՝
Սալոր, խնձոր ու ելակ,
Ամեն տեսակ մրգերից
Կախեց իր սուր փշերից,
Եվ շտապեց դեպի տուն՝
Ձագերի մոտ իր սիրուն:

Փոխադր. Հ. ՍԵՎԱՆ

# ՄԻ ՄԱՆԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

1924 թվականն էր։ Ես այն ժամանակ էլ կրկեսում էի աշխատում, միայն ոչ թե ավագ հսկիչ էի, ինչպես հիմա, այլ հսկիչ, այսինքն տոմսեր ստուգող։

Այն ժամանակ կրկեսի քարե շենքը դեռևս չկար։ Մեր արտիստները ներկայացումներ էին տալիս կամ բացօթյա, կամ Կոմունարների այգում պատրաստած տախտակե շենքում։

Այդ տարիներին մեզանում անապաստան երեխաներ շատ կային։ Ամեն երեկո դրանցից միքանիսը հավաքվում էին կրկեսի դռանն ու աշխատում էին ինձնից թաքուն ներս մտնել։ Ինչ միջոցների ասես, որ չէին դիմում։ Խոստովանում եմ. երբեմն դրանցից մեկն ու մեկին հաջողվում էր ներս ծլկել, բայց մեծ մասամբ, իհարկե, անհաջողության էին հանդիպում։

Մի անգամ, երբ ես տոմսեր էի ստուգում, մի փոքրիկ տղա փորձեց ոտքերիս արանքով սողալ ներս։

— Մի՛ խցկվեք, երիտասա՛րդ,— ասացի ես։

«Երիտասարդը», որ հազիվ ութ տարեկան լիներ, ետ քաշվեց ու աղաչանքով նայեց երեսիս։ Նրա աչքերում ներկայացումը տեսնելու այնքան բուռն ցանկություն ու թախիծ կար, որ ես խղճացի նրան։ Բայց դե, ի՞նչ կարող էի անել, ո՞ր մեկին կարող էի ներս թողնել։

Ներկայացումն սկսվեց։ Բոլոր երեխաները դռան մոտից հեռացան. մնաց միայն այդ մեկը։ Նա չէր խնդրում. պարզապես գլուխը կախել, կանգնել էր պատի տակ։ Ուզում էի դուռը փակել ու ներս գնալ, երբ մեկ էլ նայեցի նրան ու հանկարծ վճռեցի. ինչ լինում է թող լինի...

— Անունդ ի՞նչ է,— հարցրի։

— Հրաչ։

— Կրկեսում դեռ չե՞ս եղել։

— Չէ։

— Իսկ որտե՞ղ ես ապրում։

Տղան ուսերը թոթվեց։

— Ծնողներդ որտե՞ղ են։

Դարձյալ ոչ մի պատասխան։

— Դե լավ, ներս արի։

Աչքերն ուրախությունից փայլեցին։ Փոքրիկ շնիկի նման վնգվնգալով նա ներս գլորվեց բաց դռնից։

Այդ օրվանից սկսվեց իմ և Հրաչի բարեկամությունը։ Ամեն երեկո ես նրան կրկես էի թողնում։ Նա կուչ էր գալիս որևէ անկյունում և հափշտակված նայում կրկեսային




Նա չէր խնդրում. պարզապես գլուխը կախել, կանգնել էր...

«հրաշքներին»։ Ամենից շատ նրան դուր էր գալիս ծաղրածուն։

Մեր ծաղրածուն մի շատ տաղանդավոր ուկրաինացի էր։ Բացի սովորական համարներից, որ կատարում են բոլոր ծաղրածուները, նա հրաշալի կերպով կարող էր զանազան ցատկումներ անել, ձի քշել, թղթե

օձ և դանակներ կուլ տալ և կրակ ու բոց հանել բերանից։

Ներկայացումների ժամանակ մեկ-մեկ ես Հրաչի համար պաղպաղակ, կամ էժանագին կոնֆետներ էի գնում։ Նա վերցնում, ագահությամբ ուտում էր, բայց ուշք ու միտքը ծաղրածուի հետ՝ մոռանում էր շնորհակալություն հայտնել։

Մի օր հարցրի.

— Որտե՞ղ ես քնում։

— Կամուրջի տակ։

— Ո՞ր կամուրջի։

— Դե՜, որը պատահի,— ժպտաց նա։

«Լավ չէ, երեխան բոլորովին փչանում է», մտածեցի ես։ Լսել էի, որ ինչ-որ մանկատների վարչությունն կա. որոշեցի նրանց դիմել, Հրաչին որևէ տեղ տեղավորելու համար։ Բայց այդ գործով զբաղվելու ժամանակ չէր լինում։ Օրերն անցնում էին իրար հետևից, իսկ Հրաչը կամաց-կամաց բարեկամանում էր կրկեսի աշխատողների հետ։

Ամենից շուտ ծաղրածուի հետ մտերմացավ։ Սերգեյ Պոտապիչ Զիպը կյանքում խելոք ու քչախոս մարդ էր, խմել չէր սիրում, չէր սիրում նաև բարձր ծիծաղել։ Ճիշտն ասած ես նրան ժպտալիս էլ չէի տեսել։ Նրա համար ամենաբնական վիճակը հանդիստ լռությունն էր։

Թե ինչպես էր Հրաչը գրավել ծերունի ուշադրությունը, չգիտեմ։ Միայն թե մի օր էլ Սերգեյ Պոտապիչի պահանջով խմբի ադմինիստրատորը Հրաչին խմբի մեջ ընդունեց, որպես օգնական։ Դրանից հետո էլի մի ամիս Հրաչը մնաց Երևանում։ Հիմա արդեն ներկայացումից հետո նա Սերգեյ Պոտապիչի հետ էր դուրս գալիս և թվում է հենց նրա սենյակն էլ գնում էր։ Ի՞նչ լեզվով էին բացատրվում նրանք, այդ էլ անհայտ էր։ Հրաչը ռուսերեն կամ ուկրաիներեն չգիտեր, իսկ Սերգեյ Պոտապիչը հայերեն միայն երեք բառ գիտեր. «Կրկես», «փոքրիկ» և «հաց», որ նրա արտասանությամբ հնչում էր «կռկես», «պոկրիկ» և «աց»։

Սեպտեմբերի սկզբին Սերգեյ Պոտապիչն ու Հրաչը մեկնեցին Երևանից։ Կայարանում բոլորս հավաքվեցինք նրանց ճանապարհ դնելու։ Հրաչը ուրախ էր։ Նա երևի առաջին անգամ էր գնացք նստելու։ Սերգեյ Պոտապիչի դեմքին ոչ մի փոփոխություն չկար. նա քաղաքավարությամբ սեղմեց բոլոր հավաքվածների ձեռքերը և մենակ բարով ասաց։ Երբ իմ ձեռքն էր սեղմում, ես նրան ռուսերեն կամացուկ ասացի.

— Լավ նայեք տղային, խնդրում եմ։

Այդ ժամանակ նա լայնաշուրթ ժպտաց և ես տեսա, թե ինչքա՜ն գեղեցկանում էր ծերուկը ժպտալիս։

— Օ՜, պոկրի՜կ...— ասաց նա իր իմացած հայերեն բառերից ամենահարմարը։

***

Տարիներ անցան։ Երևանում քարաշեն կրկես կառուցեցին։ Մեզ մոտ սկսեցին պաստրոլների գալ Միության լավագույն արտիստները՝ ձիավարժներ, մարմնամարզիկներ, երգիծաբան արտիստներ։ Կրկեսը միշտ էլ լիքն էր լինում։ Ներկայացումից առաջ դռների մոտ ահագին բազմություն էր հավաքվում։ Շատերին տոմսակ չէր հասնում։ Այդպիսիներն աղմկում էին, երբեմն աշխատում մի կերպ ներս մտնել։ Իսկ ես հին սովորությամբ բոլորին ասում էի.

— Մի՛ խցկվեք, երիտասա՛րդ։

Այդպիսի մի օր, երբ ես իմ երկու օգնականների հետ դռան մոտ կարգ էի պահպանում, բարձրահասակ մի պատանի և մի ծեր մարդ բազմությունը ճեղքելով մոտեցան դռանը։ Պատանին ձեռքը տարավ ծոցագրպանը՝ երևի տոմսակները հանելու և միաժամանակ ոտքը դռնից ներս դրեց։

— Մի՛ խցկվեք, երիտասա՛րդ,— մեխանիկորեն ասացի ես..

Այս խոսքիս վրա պատանին գրկեց ինձ ու սկսեց համբուրել։

— Սերգե՛յ Պոտապիչ, նա է, նա է,— կրկնում էր նա ռուսերեն։

Ես շփոթվել էի, ծերունին էլ ակնապիշ ինձ էր նայում։ Հանկարծ նա ժպտաց և ես ամեն ինչ հասկացա։ Ես հիշեցի այդ ժպիտը տարիներ առաջ, կայարանում...

— Մի՞թե դուք եք,— ասացի ես։

— Պոկրի՜կ,— ժպտալով ծոր տվեց ծերունին։

Ես դռան մոտ թողեցի օգնականներիս և հյուրերի հետ առանձնասենյակս գնացի...

— Օ՜, Խարկովը մե՜ծ քաղաք է,— ոգեվորված ասում էր Հրաչը,— ինչպիսի՜ փողոցներ կան այնտեղ, ի՜նչ տներ, թատրոններ, կինո...

— Իսկ դու որտե՞ղ ես ապրում։

— Հայրիկի մոտ,— ասաց նա Սերգեյ Պոտապիչին ժպտալով։

«Ըհը, ուրեմն որդեգրել է», ուրախացած մտածեցի ես։

— Իսկ հա՞շտ եք ապրում, Սերգեյ Պոտապիչին չե՞ս զայրացնում։

Հրաչը ժպտաց.

— Նրա երեսն ո՞վ է տեսնում որ. նա մեծ մասամբ Լենինգրադում է լինում, դաս է տալիս արտիստական դպրոցում։

— Դուրս է գալիս, որ Խարկովում դու մենա՞կ ես ապրում։

— Ինչո՞ւ մենակ, բոլորի հետ։

Ես ոչինչ չհասկացա։ Հրաչը խորամանկորեն ժպտաց, իսկ Սերգեյ Պոտապիչը բացատրեց.

— Հայրիկը ես չեմ, այդպես նրանք Անտոն Սեմյոնովիչ Մակարենկոյին են մեծարում։

— Ովքե՞ր։

— Ձերժինսկու անվան մանկական գաղութի երեխաները։

Միայն այժմ ես գլխի ընկա։ Ձերժինսկու անվան մանկական գաղութի մասին ես լսել էի։ Ուրեմն Հրաչն այդ գաղութի սաներից էր։

Շուտով ներկայացումն սկսվելու էր։ Հրաչը դուրս թռավ առանձնասենյակից։ Այդ ժամանակ ես Սերգեյ Պոտապիչին հարցրի.

— Գործո՞վ եք եկել։

— Գործով։

— Իսկ երեխա՞ն։

— Հենց նրա գործով,— ձայնը ցածրացնելով ասաց նա,— թվում է, թե գտել եմ նրա ծնողներին։

Ես հետաքրքրվեցի և նա մանրամասն պատմեց.

— Երեխային ինձ մոտ պահել չէի կարող. կրկեսի արտիստի թափառական կյանքը չէր թույլատրում։ Նրան առաջին հերթին ուսում էր հարկավոր։ Դրա համար էլ ես նրան Անտոն Սեմյոնովիչին հանձնեցի։ Նույն ժամանակ ես նամակներ գրեցի Հայաստան. հետաքրքրվեցի տղայի հարազատներով։ Երկար ժամանակ պատասխան չկար։ Վերջապես մի ամիս առաջ այսպիսի նամակ ստացա։

Նա գրպանից մի նամակ հանեց և շարունակեց.

— Մենք այսօր տեղ հասանք, տեղավորվեցինք հյուրանոցում։ Անտոն Սեմյոնովիչն ու ես տղային դեռ ոչինչ չենք ասել. խնդրում եմ, դուք էլ չասեք. հանկարծ կարող է սխալ դուրս գալ։ Հրաչը կարծում է, թե ես գործով եմ եկել Երևան և հետո վերցրել եմ նրան հենց այնպես, որ հայրենի վայրերը տեսնի։



Ես շփոթվել էի, ծերունին էլ ակնապիչ ինձ էր նայում։

***

Իմ պատմությունն արդեն վերջանում է։ Բարեբախտաբար Սերգեյ Պոտապիչի ստացած նամակը թյուրիմացություն չէր։ Հրաչը գտավ իր մորն ու քրոջը։ Մի շաբաթ նրանց տանը հյուր մնալուց հետո Սերգեյ Պոտապիչը նորից Լենինգրադ մեկնեց։ Հրաչը մնաց Երևանում։

Հիմա նա ինժեներ է, քաղաքում շենքեր է կառուցում ու մեկ-մեկ երեկոյան կրկես է

*գալիս քրոջ ու մի անծանոթ աղջկա հետ։ Մենք դարձյալ հանդիպում ենք դրան մոտ։*

*— Մի՛ խցկվեք, երիտասա՛րդ,— կատակում եմ ես։*

*Նա ժպտում է, ու ինձ թվում է, թե նրա ժպիտը շատ է նման Սերգեյ Պոտապիչի ժպիտին. բարի ծերուկ Սերգեյ Պոտապիչի, որ արդեն վաղուց չկա։*

# ՔԱՆԱՔԵՌ—ՍՆԵՏԻՆՍԿ

Գ. ԲԱԴԱԼՅԱՆ

Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Այս բանը տեղի ունեցավ երեք տարի առաջ, ամռանը։ Քանաքեռի ռուսական միջնակարգ դպրոցի վեցերորդ դասարանի աշակերտ Անատոլի Խաչատրյանը ծնողների հետ մեկնեց Ուկրաինա, Պոլտավայի մարզի Սնետինսկ գյուղը հանգստանալու։

— Անատո՛լի, չմոռանաս մեզ, նամակ գրիր։

— Այնտեղի քո նոր ընկերներին կբարևես մեր կողմից,— ճանապարհելիս ասացին նրան դասընկերները։

Եվ Անատոլին մեկնեց։

Սնետինսկում նա շատ ուրախ ու ընկերասեր տղաների ու աղջիկների հետ ծանոթացավ։ Խաղալու կամ լողանալու գնալիս, զբոսանքի կամ թե դաշտ՝ կոլտնտեսությանը օգնելու դուրս գալիս, նրանք առանց Անատոլիի չէին գնա, մանավանդ, որ ինքը՝ Անատոլին էլ շատ ընկերասեր ու աշխատասեր տղա էր։

— Անատո՛լի, իսկ ինչպիսի՞ն է Հայաստանը, ձեր մայրաքաղաքը,— մտերմական զրույցների ժամանակ հարցնում էին ընկերները։ Եվ Անատոլին սիրով ու մեծ ոգևորությամբ պատմում էր Երևանի, Քանաքեռի, Խաչատուր Աբովյանի մասին։ Ուկրաինացի երեխաները մեծ հետաքրքրությամբ էին լսում նրան։

— Ա՛յ հենց որ դպրոցն ավարտենք և էքսկուրսիա կազմակերպենք դեպի Կովկաս, կլինենք Ադրբեջանում, Վրաստանում, Հայաստանում. կդիտենք Կովկասի գեղատեսիլ վայրերն ու նորակառույցները,— հաճախ միմյանց ասում էին ոգևորված սնետինսկցիները։

Անատոլին շատ գոհ էր իր ուկրաինացի ընկերներից։ Երևան վերադառնալիս նա մեծ դժվարությամբ բաժանվեց նրանցից։ Երբ նա ճանապարհվում էր դեպի Հայաստան, նրան մոտեցավ Սնետինսկի միջնակարգ դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի Ռաիսա Լիսենկոն և մի ծրար տալով ասաց.

— Անատո՛լի, այս նամակը կարդացեք ձեր դասարանում. մենք՝ 6-րդ դասարանցիներս ենք գրել. ցանկանում ենք ձեզ հետ մշտական կապ պահպանել։

— Շնորհակալություն, Ռաի՛սա, մենք կպատասխանենք ձեր նամակին. դուք հաճախ գրեցեք մեզ,— ծրարը վերցնելով ասաց Անատոլին։

Քանաքեռի երեխաները կարդալով Անատոլիի բերած նամակը, ջերմորեն պատասխանեցին ուկրաինացի ընկերներին։ Նրանք Սնետինսկ ուղարկեցին նաև մի փոքրիկ ծանրոց, որի մեջ դրել էին Հայաստանի ամենահոտավետ ու գեղեցիկ ծաղիկների սերմեր։

«Ցանեցեք այս սերմերը ձեր դպրոցամերձ հողամասում,— գրեցին քանաքեռցիները,— և գրեցեք, թե դրանք ինչպե՞ս են աճում ձեզ մոտ։ Դուք էլ մեզ ուղարկեցեք ձեր մարզում աճող ծաղիկների սերմերից...»։

Եվ նրանց միջև նամակագրական սերտ կապ ստեղծվեց։ Այդ օրից անցել է երեք տարի։ Այժմ արդեն միմյանց նամակներ են գրում նաև առանձին պիոներներ ու դպրոցականներ։

Պիոներ Վալյա Խաչատրյանը հինգերորդ դասարանում էր, երբ գրեց առաջին նամակը Սնետինսկի հինգերորդ դասարանի աշակերտուհի Կատյա Մատերինսկայային։ Նրանք այժմ միմյանց հետ կապված են, ինչպես մտերիմներ, հարազատ քույրեր։

1953 թվականի նոյեմբերին Կատյան Ուկրաինայից Վալյային գրեց.

«Սիրելի Վալյա, այսօր առավոտյան ժամը

յորն էր, երբ մայրիկս ինձ հանձնեց քո նամակը: Չես կարող երևակայել, թե նամակդ ինչպիսի ուրախություն ու հրճվանք պատճառեց ինձ: Չէ՞ որ դրան վաղուց էի սպասում: Վալյա, իմ հայրիկը և մայրիկը շատ գոհ են, որ քեզ հետ նամակագրական կապ եմ պահպանում: Նրանք հաճախ են ինձ ասում. «Կատյա, ինչո՞ւ քո ընկերուհին, Վալյան, ամռան ամիսներին չի գալիս մեզ մոտ: Այս ամռանը գրիր, թող անպայման գա Ուկրաինա...»: Ես էլ եմ ուզում, սիրելի Վալյա, որ դու գաս մեզ մոտ, տեսնես Պոլտավան, մեր գյուղը, դպրոցը, անտառները, գետերը... Մենք միասին այնքան ուրախ ժամանակ կանցկացնենք: Ես հպարտանում եմ, որ Հայաստանում էլ քեզ պես գերազանց սովորող, մտերիմ բարեկամներ ունեմ: Քո նամակները Երևանի, Քանաքեռի, ձեր դպրոցական կյանքի մասին՝ կարդում եմ իմ ընկերներին: Մեծ սիրով կկարդայի Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպը...»:

Վալյան Կատյայից բացի ուրիշ ընկերներ էլ ունի Սնետինսկում: Նրանցից Միշա Շուբինը գրում է.

«...Վալյա, արդեն առաջին քառորդը վերջացավ: Ես այժմ կարող եմ քեզ ուրախացնել իմ գնահատականներով, բոլորը «4» և «5» են: Իսկ ինչպե՞ս ես սովորում դու, քո ընկերները: Ես չգիտեմ, թե ձեզ մոտ ինչպես են գործում խմբակները: Մեզ մոտ ամենից լավ գործում են պատանի բնասերների ու աշխարհագրագետների խմբակները: Մեր դպրոցը հիմա շրջապատում են գեղեցիկ ծաղկանոցները, որտեղ բուրում են նաև ձեր ուղարկած սերմերից աճած ծաղիկները: Մենք պատանի աշխարհագրագետներս ամռանը մի քանի անգամ արշավի ենք դուրս եկել ուսումնասիրելու մեր շրջակայքի բուսականությունը, հողաշերտերի տեսակները, ջրերը, անտառները, իսկ այս ամռանը որոշել ենք գնալ և դիտել այն դաշտը, ուր 1709 թվականին տեղի ունեցավ Պոլտավայի հայտնի ճակատամարտը:

Դուք, Վալյա, գեղարվեստական գրքի կոլեկտիվ ընթերցում կազմակերպո՞ւմ եք, միասին գնո՞ւմ եք կինոնկարներ դիտելու: Մենք դիտել ենք «Ջերմ սիրտ», «Երիտասարդ գվարդիա» և այլ կինոնկարներ, իսկ ջոկատում մի քանի օր առաջ քննարկեցինք Օսեևայի «Վասյոկ Տրուբաչովը և նրա ընկերները» գիրքը: Ինձ շատ դուր եկավ այդ գիրքը»:

Քանի-քանի այսպիսի ջերմ նամակներ են միմյանց գրել Ուկրաինայի և Հայաստանի պիոներները:

Հայաստանից մեկնող գնացքներն ու օդանավերը ամեն օր դեպի Կիև, Խարկով, Պոլտավա, Օդեսա, Դոնբաս են տանում մեր երեխաների հազարավոր նամակներ, լուսանկարներ և այնտեղից Երևանի, Լենինականի, Կիրովականի, Քանաքեռի և մյուս քաղաքների ու գյուղերի պիոներներին բերում մտերմական, սրտառուչ պատասխան-նամակներ:



*Քանաքեռի ռուսական միջնակարգ դպրոցի աշակերտները նամակ են գրում Սնետինսկ գյուղի պիոներներին:*

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական կապն ու համագործակցությունն իր բարերար ազդեցությունն է թողնում նաև սովետական բոլոր երեխաների վրա: Մեր երկրում տարբեր ազգությունների երեխաները միմյանց հետ կապված են, միմյանց հիշում և օգնում են, ինչպես հարազատ եղբայրներ ու քույրեր, ինչպես մի մեծ ընտանիքի հարազատ զավակներ:

## ԵՐԵՎԱՆԻ ՊԱՏԱՆԻ ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՆԵՐԸ ՈՒԿՐԱԻՆԱՅԻՆ



Տարաս Շևչենկո: *Քանդակ Ռոբերտ Տիգրանյանի։*



Թշնամիները այրում են Տարաս Բուլբային: *Քանդակ Կարլեն Սարոյանի։*



Բոգդան Խմելնիցկին պայքարի է կոչում ժողովրդին: *Քանդակ Ալբերտ Պողոսյանի։*



Տարաս Բուլբան ձիու վրա: *Քանդակ Դավիթ Բաբայանի։*

*Ֆոտոռեպրոդուկցիաները՝* Ք. Սեվանցյանի




Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. ԱՐ. ՋԱՔԱՐՅԱՆԻ

Ես ապրում եմ Երևանում:
Մեր տան դիմաց կա պարտեզ.
Գիտե՞ք, դպրոց դեռ չեմ գնում,
Որովհետև փոքր եմ ես:
Ճանաչում եմ մեր նոր շենքում
Ապրողներին փոքր ու մեծ.
Թե ով ե՞րբ է գործի գնում,
Ո՞վ ինձ ինչ գիրք նվիրեց:
Մի գեներալ կա մեր շենքում
Շատ եմ սիրում ես նրան.
Երբ տեսնում է ինձ մեր բակում
Բարևում է անպայման:
Վիրաբույժ է Սեդրակ քեռին,
Չորրորդ հարկումն է ապրում.
Ասում են, թե իմ հայրիկին
Նա է բուժել բանակում:
Մի քեռի կա՝ գյուղատնտես,
Էլ չեմ տեսնում ես նրան.
Մայրս ասաց.— Բա չգիտե՞ս,
Գնացել է Ապարան...
Իսկ մորաքույր Հայկանուշը
Երրորդ հարկումն է ապրում.
Հագիս սիրուն նոր հագուստը՝
Նա է կարել արտելում:
Մի քեռի կա երկրորդ հարկում
Որմնադիր է անվանի.
Նրա կրծքին կա շողշողուն
Շքանշան Լենինի:
Մի օդաչու քեռի էլ կա,
Ուշ գալիս է, շուտ գնում.
Երևանից Կիև, Մոսկվա
Նամակներ է միշտ տանում:
Իսկ մորաքույր Մայրանուշը
Դասատու է պահանջկոտ,
Իմ մեծ քույրը՝ Սիրանուշը
Սովորում է նրա մոտ:
Մեքենավար Իվան քեռուն
Քիչ եմ տեսնում, ճիշտն ասած.
Նա հաճախ է Մոսկվա գնում
Նոր գնացքով ճեպընթաց:
Նկարիչ է Համո քեռին
Կապույտ-կապույտ աչքերով.
Մի օր նստած առվի ափին՝
Ինձ նկարեց ներկերով:
Ա՜յ, չեմ սիրում ես Ջոնիկի՜ն...
Երբ իմ մոտով գա, անցնի.
Պայուսակով խփում է ինձ
Գիտե՞ք, առանց պատճառի...
Մեր մեծ շենքի հենց դեմ ու դեմ
Ապրողներ շատ ու շատ կան.
Նրանց մասին ձեզ կպատմեմ,
Երբ հանդիպենք մյուս անգամ:



# ՊՈՒՇԿԻՆՅԱՆ ԼԵՌՆԱՆՑՔԻ ԱՐՈՏՆԵՐՈՒՄ

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

Ոլորապտույտ վեր է սլանում մեր ավտոմեքենան և բարձունքը շրջանցելով կանգ է առնում նորատունկ սոճուտի մոտ, որտեղ 1829 թվականին Պուշկինը հանդիպել է Գրիբոյեդովի դիակը տանող սայլին։ Այդ հանդիպման հիշատակին այստեղ կառուցված է մի հուշաղբյուր։

Անցնելով հուշաղբյուրի առջևով, մեր մեքենան իջնում է դեպի ձորահովիտը։ Հեռվում զմրուխտյա կանաչի մեջ երևում են Լոռվա կարմրատանիք գյուղերը. ալպիական արոտավայրերում տարածվում են կոլտնտեսային նախիրներն ու հոտերը։

Ճանապարհի ոլորաններից մեկում տեսնելով վաղեմի ծանոթ Սրապիոն Միրզոյանին և զոոտեխնիկին, մենք մեքենայից իջնում ենք։ Փրչոտ գամփռը կողքին՝ նրանց մոտ կանգնել է թխաչյա մի պատանի։

— Այս ճուտիկին չե՞ք ճանաչում,— դիմում է մեզ Վարդաբլուրի կոլտնտեսության նախագահի տեղակալ Միրզոյանը.— ուրեմն ծանոթացեք, հորթապահ Ռուբիկ Անանյանն է։

Ռուբիկն իր թուխ աչքերը հառում է մեզ վրա և ամոթխած ժպտում։

— Ռուբիկն անցյալ ձմեռ պահել է 30, իսկ այժմ արոտավայրում պահում է 60 հորթ, չնայած, որ ինքը դեռ պատանի է։ Նրա պահած մատղաշները շատ լավ են աճում, ամենից լավ՝ «Վասոն». օրական 800—850 գրամ. իսկ «Բինգանը»՝ մինչև 900 գրամ,— ասում է զոոտեխնիկը։

Այդ գովասանքներից Ռուբիկը շփոթվում է, կարմրում, գլուխը կախում։ Հետո հանկարծ քամու պես սլանում է մի քանի գիժ հորթուկների հետևից, որոնք հեռացել էին ընկերներից և բարձրացել ժայռի վրա։

— Վախենում է քարից ընկնեն, ոտները ջարդեն։ Այդպիսի դեպքեր պատահել են։ Անհանգիստ տղա է Ռուբիկը. գիշեր ու ցերեկ իրար է խառնում, որ չլինի ուրիշ հորթապահներ իրենից առաջ անցնեն։ Գիշերը եկեք այստեղ, կտեսնեք, թե ինչպես Ռուբիկը հրացանը ուսից կախած, գամփռի հետ շրջում է ու հորթերին արածացնում։ Գայլերը չեն համարձակվում մոտենալ նրա պահած մատղաշներին։ Դե՛, գիշերային զովության մեջ էլ մատղաշ անասուններն ավելի ախորժակով են ուտում խոնավ խոտը և արագ ավելացնում իրենց քաշը։

***

Մի գիշեր սարում տեղատարափ անձրև է սկսվում։ Կայծակները իրար հետևից ճեղքում են անթափանց խավարը և շանթահարում չորս բոլորը։ Ռուբիկը հորթերին ապահով տեղ է քշում և պաշտպանում հորդառատ անձրևից ու գայլերից։ Անասունները հաշվելով Ռուբիկը նկատում է, որ մի հորթը չկա։ Չկա սպիտակ ճակատով Շեկլիկը։ Ռուբիկը իր գամփռի հետ դուրս է թռչում և անհետանում է գիշերվա խավարում։ Նայում է ամեն մի թփի ու ժայռի տակ, բայց հորթուկը չկա ու չկա։

Հեռուներից լսվում է գայլի ոռնոց և թրջված Բողարը վնգստալով պտտվում է տիրոջ շուրջը։ Ռուբիկը մտածում է՝ «Ահա ուր որ է գայլերը կգան, կգտնեն կորած հորթին ու կհոշոտեն»։

Ռուբիկը քայլերն ուղղում է ձորամեջ։ Անձրևից լպրծուն դարձած գետնի վրա սայթաքում է, մի քանի անգամ ընկնում ու բարձրանում՝ անհանգստացնելով Բողարին։ Մի անգամ էլ նա սայթաքում է քարափի պռնկին. բայց կառչում է թփերին և հազիվ փրկվում ձորն ընկնելուց։

Վերջապես անձրևը դադարում է, փչում է սառը քամի։ Բայց Ռուբիկը չի զգում այդ սառնությունը։ Նրա ուշքն ու միտքը կորած հորթի կողմն է։

Հանկարծ շունն ուրախ վնգստում է և Ռուբիկի ոտքին քսվելով արագ նետվում մոտակա ժայռի տակ։ Ռուբիկը հետևում է Բողարին և այնտեղ տեսնում իր Շեկլիկին։

— Շեկո՛ ջան, այդ ո՞ւր էիր կորել, այդ

ի՞նչ էր պատահել քեզ,— ուրախ բացագանչում է նա, փաթաթվում և համբուրում է իր հորթուկին, ապա շոյում գամփռի թաց գլուխը, սեղմում կրծքին և հորթուկին ապահով հասցնում տեղ։

Այս պատմությունից հետո Միրզոյանն ավելացնում է.

— Մատղաշներն անկորուստ պահպանելու և լավ աճեցնելու համար Ռուբիկը միշտ էլ շնորհակալության է արժանացել կոլտնտեսության վարչության կողմից, և երեք տարի անընդհատ պարգևատրվել է մեկական հորթով։ Ամսեկան էլ 35—40 աշխօրից պակաս չի ստանում։

***

Ժողովն արդեն վերջանում էր։ Խոսել էին շատերը, գովասանքի խոսքեր ասել կոլտնտեսության ամենակրտսեր հորթապահի մասին։ Քվեարկությունից առաջ խոսք խնդրեց Արամայիս Աբովյանը։



...Անասուններն ավելի ախորժակով են ուտում խոնավ խոտը...

— Ես էլ եմ ուզում մի երկու խոսք ասել Ռուբիկի մասին,— ասաց նա։— Բոլորդ գիտեք, որ մենք մրցում ենք իրար հետ։ Նա շատ լավ է կատարում պարտիայի և կառավարության որոշումները անասնապահության մասին։ Քաղխմբակի և զոոտեխնիկական խմբակի ոչ մի պարապմունք բաց չի թողնում։ Դե, ինչ ասեմ, Ռուբիկը սրտանց է աշխատում. իսկ սրտանց աշխատողը միշտ հաղթում է... Նա արժանի է Լենինյան կոմերիտմիության շարքերն ընդունվելու...

Լսվեց ժողովի նախագահի բարձր ձայնը։

— Ովքե՞ր են համաձայն՝ Ռուբիկ Անանյանին ընդունել կոմերիտմիության շարքերը։

Ռուբիկը տեսավ բարձրացրած ձեռքեր և լսեց նախագահի ձայնը.

— Դեմ չկա՞, ձեռնպահ՝ չկա՞։ Ուրեմն անցնում է միաձայն։

Շփոթվել ու շիկնել էր փոքրիկ հորթապահը։ Բերկրանքից արագ տրոփում էր նրա սիրտը։

# ԻՆՉ ՈՐՈՇԵՑ

Գ. ՀԱԿ

(ՀամԼԿԵՄ 12-րդ համ

Այս տարի մարտին Մոսկվայում, Կրեմլի մեծ պալատում տեղի ունեցավ Համամիութենական Լենինյան կոմերիտմիության 12-րդ համագումարը:

Մեր Հայրենիքի բոլոր անկյուններից համագումար էին եկել հարյուրհինգ ազգության ավելի քան 1300 պատանիներ ու աղջիկներ. սովետական պանծալի երիտասարդության լավագույն ներկայացուցիչներ՝ գյուղատնտեսության, արդյունաբերության, գիտության, գրականության և արվեստի երիտասարդ շատ առաջավորներ, աշակերտներ, ուսուցիչներ, ջոկատավարներ, կոմերիտական ղեկավար աշխատողներ: Դելեգատների թվում էին Սոցիալիստական Աշխատանքի Հերոս կոմբայնավար Վալենտին Վոլչիխինը, կթվորուհի՝ Ելենա Շարինան, կոլտնտեսության նախագահ Նադեժդա Սերդյուկը, արտադրության նորարարներ Լիդիա Կորոբեյնիկովան, Մարիա Ռոժնյովան, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Սերգեյ Մերգելյանը, գրող Ալեքսանդր Գոնչարը, ուսուցչուհի Գավրիար Ռասուլովան, աշակերտուհի Նինա Ֆոկինան և շատ ուրիշներ:

ՀամԼԿԵՄ Կենտկոմի հրավերով համագումարին մասնակցելու էին եկել արտասահմանյան 54 երկրի ներկայացուցիչները, դեմոկրատական երիտասարդության Համաշխարհային ֆեդերացիայի պրեզիդենտ Բրունո Բեռնինին, գլխավոր քարտուղար Իրժի Պելեկանը:

Նրանք բոլորն էլ բերել էին իրենց երկրների երիտասարդության ողջույնը Լենինյան կոմերիտմիությանը, սովետական բոլոր երիտասարդներին, ամենաերջանիկ երիտասարդությանն աշխարհում:

Լենինյան կոմերիտմիությունն իր համագումարն էր եկել սերտորեն համախմբված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի շուրջը:

Համագումարի դելեգատները, ամբողջ կոմերիտմիությունը մեծ խանդավառությամբ ընդունեցին հարազատ Կոմունիստական պարտիայի ողջույնը 12-րդ համագումարին, համարելով, որ դա կոմերիտմիության ամբողջ աշխատանքի հետագա բարելավման մարտական ծրագիր է:

Համագումարի ամբողջ աշխատանքն անցավ պարտիայի կողմից կոմերիտմիության առաջ դրված խնդիրների կատարման նշանաբանով: Ելույթ ունեցող դելեգատները պատմում էին պարտիայի և կառավարության՝ գյուղատնտեսության հետագա զարգացմանը վերաբերող որոշումների կատարման գործում կոմերիտական կազմակերպությունների մասնակցության մասին: Նրանք խոստանում էին ավելի ակտիվորեն մասնակցել երկրի հասարակական կյանքին: Նրանք ասում էին, որ կոմերիտականները և կոմերիտուհիները, սովետական պատանիներն ու աղջիկները, իրենց բոլոր ուժերը կնվիրեն պարտիայի իմաստուն կանխագծումների կենսագործմանը: Համագումարը մի անգամ ևս ընդգծեց, որ պարտիայի գործը, պարտիայի խոսքը կոմերիտմիության համար ամեն ինչից բարձր է:



Մոսկվայի պիոներները ողջունու

Սովետական Միության 18 միլիոն կոմերիտականների անունից համագումարը հավաստիացրեց պարտիային, որ երիտասարդությունը հետագայում ևս հաստատակամորեն կհետևի Կոմունիստական պարտիային, որպես նրա նվիրված զավակը, որպես նրա հուսալի ռեզերվն ու օգնականը:

ՀամԼԿԵՄ 12-րդ համագումարը քննարկեց շատ կարևոր հարցեր:

Մեր պարտիան և կառավարությունը անսահման հոգատարություն են ցուցաբերում դեպի մատաղ սերնդի կրթության ու դաս-

# ...ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

...ՐՅԱՆ

*(...գումարի դելեգատ)*

...տիարակության գործը: Դրա վկայությունն է նաև այն, որ համագումարն իր օրակարգում առանձին տեղ էր հատկացրել Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության աշխատանքի հարցերին:

Իր գոյության երեսուն տարվա ընթացքում պիոներական կազմակերպությունը աշխատանքի մեծ փորձ է կուտակել և զգա-



*...մ են Համագումարի դելեգատներին:*

...լի օգնություն է ցույց տալիս սովետական դպրոցին, ուսման որակի բարձրացման, կարգապահության ամրապնդման գործում: Միաժամանակ կան խոշոր թերություններ: Պիոներական կազմակերպության աշխատանքի մակարդակը դեռևս ցածր է կյանքի պահանջներից, պարտիայի կողմից առաջադրվող խնդիրներից: Դեռևս զգալի թվով պիոներներ վատ են սովորում, ուսման և վարքի մեջ օրինակ չեն հանդիսանում մյուս դպրոցականների համար:

Մի շարք դրուժինաներում անբավարար է դաստիարակվում երեխաների կամքը, համառությունը, կոլեկտիվիզմի զգացումը, աշխատասիրությունը: Կոլեկտիվը չի ներգործում այն պիոներների վրա, որոնք լրջորեն չեն վերաբերվում ուսմանը, իրենց վատ են պահում դասերին, չեն կատարում տնային առաջադրանքները, հարգալից վերաբերմունք չեն ցուցաբերում դեպի դասատուները: Շատ ջոկատներում տարածում են ստացել այսպես կոչված առարկայական հավաքույթները, որտեղ պիոներներն ուսումնասիրում են ուսումնական ծրագրի առանձին թեմաներ, կրկնում են կամ սովորում դասի ժամանակ անցած նյութը: Դրա համար էլ շատ ջոկատների, օղակների աշխատանքը միապաղաղ է, ձանձրալի, չի բավարարում պիոներների բազմակողմանի հետաքրքրություններին:

Համագումարը գտավ, որ պիոներական կազմակերպությունը երեխաների մեջ պետք է դաստիարակի բարեխիղճ վերաբերմունք դեպի ուսումը, գիտելիքների նկատմամբ նրանց մեջ սեր և հետաքրքրություն պատվաստի զանազան խմբակներում, դպրոցամերձ փորձնական հողամասերում, կաբինետներում, լաբորատորիաներում, պիոներների պրակտիկ և գրավիչ գործերի միջոցով:

Համագումարը պահանջեց զգալիորեն բարձրացնել պիոներական հավաքույթների նախապատրաստման ու անցկացման որակը: Հավաքույթներում պիոներները պետք է քննարկեն գրքեր, ներկայացումներ, կինոֆիլմեր, ցուցադրեն տեխնիկայի և գեղարվեստական ստեղծագործության մեջ իրենց ձեռք բերած նվաճումները, սովորեն խաղեր, երգեր, պարեր, նախապատրաստեն պիոներական հերթական գործերը: Հավաքույթների նախապատրաստմանն ու անցկացմանը պետք է մասնակցեն իրենք պիոներները:

Կոմերիտական կազմակերպությունները պիոներների մեջ ավելի ջերմ սեր պիտի զարթեցնեն դեպի ֆիզիկական աշխատանքը, պիոներներին մասնակից դարձնեն դպրոցական կաբինետների կահավորմանը, դպրոցների տերիտորիաների բարեկարգմանը, սպորտային հրապարակների կառուցմանը, դպրոցամերձ ուսումնափորձնական հողամասերում կատարվող աշխատանքին և այլն: Պիոներները ծնողներին պետք է օգնեն տնային գործերում, կատարեն ինքնասպասարկման աշխատանք:

ՀամԼԿԵՄ 12-րդ համագումարը Սովետական Միության պատանի պիոներներին կոչ արեց համառորեն տիրապետել գիտելիքներին, ակտիվորեն մասնակցել հանրօգուտ աշխատանքներին, պատրաստվել դառնալու մեր երկրում կոմունիստական հասարակարգի ակտիվ կառուցողներ:

# Լալ Համազը



Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Քիչ բան եմ հիշում իմ դառն ու տխուր մանկությունից։ Ասես երազի մեջ միտս է գալիս կորացած մեջքով կծկված տատս, նրա թևերի սուրմաները, կարմիր մահուդե գոտին։ Բայց ամենից լավ հիշում եմ մեր հարևան կաղ Օհանջանի բատրակին՝ Լալ Համազին։

Լալ Համազը... ասես հենց երեկ էր, որ նա ինձ հետը տանում էր մեր սարերը, շվի շինում ինձ համար ու երբ հոգնում էի, շալակում էր ու ոչխարի հոտի հետ գյուղ բերում։ Շատ քաղցր ու դառն հիշողություններ է թողել իմ մեջ այդ միշտ լուռ, մռայլ ու թախծոտ տղան։ Երբեմն նա անսահման բարի էր, երբեմն մի վատ բան տեսնելիս այնպես էր կատաղում ու բորբոքվում, որ մարդ սիրտ չէր անում մի բան հասկացնել նրան։ Նա առանձնապես խիստ ու չար էր իր տիրոջ՝ կաղ Օհանջանի թոռների ու հարսների հետ, իսկ ինձ հետ միշտ բարի էր ու լավ, միշտ սիրալիր էր ու հոգատար։ Նա տաս տարով մեծ էր ինձանից. այսպես՝ տասնյոթ-տասնութ տարեկան կլիներ։ Ամառ-ձմեռ գլխաբաց էր ու բոբիկ։ Գանգուր մազերը գառան մորթու նման թաղքել էին նրա կլորիկ գլխին, հին չուխան ծանրացել էր հազար ու մի կարկատաններով։

Ես ու տատս ապրում էինք գյուղի գլխին գտնվող մի հին ու խոնավ քարանձավում։ Նրա վրա կախված էին բա՜րձր-բա՜րձր ժայռեր, որոնց ճեղքերից առավոտներն ու իրիկնապահերին լսվում էր աղավնիների աղմուկը ինչպես քարափից ցած թափվող գետի խշշոց։

Մենք ո՛չ այգի ունեինք, ո՛չ արտ։ Մեր ունեցած չորքոտանիները՝ մի քնձռոտ շուն էր, որը ժամերով կանգնում էր արևի տակ ու մռռում մոտիկ անցնողների վրա, մեկ էլ չալ կատուն։

Իրիկնապահերին կտուրներից ծիրանագույն ծուխ էր բարձրանում և դանդաղ ոլորվելով մշուշի մեջ, լուծվում կապույտ-կապույտ երկնքում։ Հետո դարմանի ծխի պես թանձր խավարը դուրս էր սողոսկում մթին քարանձավներից ու պատում գյուղը, ցից ժայռերը և գետափի տափարակը։ Այն ժամանակ տատս բռնում էր իմ ձեռքն ու տրնքալով ու հազալով ինձ տանում դեպի տուն։ Շեմքին նա շուռ էր գալիս, նայում սարալանջին կեռվող, մթան մեջ կույ գնացած ճանապարհի կողմն ու մրմնջալով ասում.

— Սև մնաս, ա՛յ ճանապարհ, բա ե՞րբ ես բերելու իմ Աբեթնակին։

Աբեթնակը հայրս էր, որին ես երբեք չէի տեսել։ Միայն տատիս պատմածներից գիտեի, որ նա աշխատում է յոթ սարերից դենը գտնվող մի մեծ քաղաքում և որ միմիայն նա կարող է հաղթել մեր հարևան կաղ Օհանջանի յոթ տղաներին։ Ամեն անգամ հորս անունը տալիս տատս ջերմեռանդությամբ խաչ էր հանում երեսին ու գոգնոցով սրբում միշտ թաց աչքերը։

Տատս պատմում էր, որ իմ հայրը մեզ համար մեծ քաղաքից փող է ուղարկում, սակայն այդ փողը պրիստավը տալիս է մեր հարևան կաղ Օհանջանին՝ պապիս թողած նրա պարտքերի տոկոսների դիմաց։

— Ե՞րբ պիտի պրծնեն տոկոսները, տատի՛,— երբեմն հարցնում էի ես։

— Էն զահրումար տոկոսին պրծնում

չկա, բալաս,— ասում էր տատս ու համբուրելով իմ ճակատը, շարունակում.— սպասի՛ր, հալբաթ մեր գլխի տերը կգա մի օր ու կաղ Օհանջանի բկին կչոքի։

Եվ ես սպասում էի այն լուսավոր օրվան, որ կգա, «մեր գլխի տերը»՝ այսինքն հայրս ու ես կարմիր կոշիկներ կունենամ, ինչպես ունեին Օհանջանի թոռները։ Գիշերները շուտ-շուտ երազիս մեջ տեսնում էի հորս, որը գալիս էր հրեղեն ձիու վրա, ինձ համար այնքան կոնֆետ ու շամիչ բերելով, որ ուտելով չես պրծնի։ Այդ երազների մեջ էլ արթնանում էի ու սրթսրթում ցուրտ քարանձավի մեջ։





Տատս պատմում էր...

Ես չգիտեմ, թե ի՞նչ էր ասում տատս։ Ցերեկները նա ինձ թողնում էր մեր քարափին, իսկ ինքը իջնում ներքև, անհետանում գյուղի ծուռ ու մուռ փողոցներում և վերադառնում միայն այն ժամանակ, երբ արևը մայր էր մտնում հեռու սարերի հետևը։

Զառիվերով տատս բարձրանում էր ոտքերը հազիվ քարշ տալով։ Տեղ հասնելով նա հոգնած նստում էր քարափին, տնքում ու երկար հազում. ես անհամբեր նայում էի նրա ոսկրոտ ձեռքին։ Եթե տատս ձեռքը տանում էր դեպի հնաձև կապայի գրպանը, նշանակում էր մի կտոր հաց, եփած կարտոֆիլ կամ խաշած լոբի կտա ինձ, իսկ եթե ձեռքերը խաչում էր կրծքին, հասկանալի էր, որ դատարկ է տուն եկել նա ու իմ հույսը կտրվում էր մի բան ուտելուց։

Տափակ կտուրներից ծուլորեն ելնող ծուխը կապույտ պոչի նման կեռմաններ էր անում, ձգվում երկնքի մեջ ու գնալով-գնալով հալվում։ Ինձ թվում էր, թե այդ կտուրների տակ եփում են աշխարհի ամենալավ կերակուրները։

Կաղ Օհանջանենց տան կողմից խորոված ու էլի ուրիշ կերակուրների հոտ էր գալիս. նրա հարսները ոսկե սուրմաները զընգզընգացնելով՝ մառանից տուն էին մտնում, տնից մառան՝ իրիկնահացի պատրաստություն տեսնելով։

— Տատի՛, բա մեր օջախը ե՞րբ պիտի վառես,— նայելով հարուստ հարևանների օջախներից ելնող ծխերին՝ հարցնում էի ես։

— Մեր օջախը՞, դե՛, կվառեմ, որդի՛ս, կվառեմ, երբ հերդ տուն գա։

***

Ամեն երեկո, երբ սարալանջից իջնում էր կաղ Օհանջանի ոչխարի հոտը, մեր քարանձավի մոտով անցնող ճանապարհից փոշի էր բարձրանում։ Հոտի առջևից գալիս էին սուր եղջյուրները ցցած այծերը, որոնց մազը հասնում էր մինչև գետին, իսկ կրծքները լիքն էին կաթով։ Նրանցից հետո անցնում էին գեր ոչխարները։ Վերջում շները հետևը գցած երևում էր Լալ Համազը։

Դեռ հեռվից նա ձեռքով էր անում, հետո մոտենալով կռթնում հասա մահակին ու համր լռությամբ երկար նայում ինձ ու տա-

տիս։ Եթե այդ երեկո տատս ուտելու մի որևէ բան էր տվել ինձ, ապա նայելով Լալ Համազին՝ մրմնջում էր.

— Է՜հ, քոռանա բախտ բաժանողը, որդի՛, մի լեզուն ի՞նչ է, որ խնայել է քեզնից։

Իսկ եթե այդ օրը նա ինձ համար ուտելու ոչինչ չէր բերել, մի ձեռքը դնում էր իմ փորին, մյուսով Լալ Համազին հասկացնում, որ ես քաղցած եմ։ Համազն իսկույն տխրում էր, հաստ շրթունքները ամուր սեղմում իրար ու չարացած հեռանում։

Ոչխարը փարախներում տեղավորելուց հետո Համազը վերադառնում էր, նստում մեր քարափին ու իր բաժին հացն ու պանիրը կիսում ինձ ու տատիս հետ։



...Հացն ու պանիրը կիսում ինձ ու տատիս հետ...

— Քո հողը կաղ Օհանջանի օխտը տղաների գլխին, Համազ. աշխարհի չափ ապրուստ ունեն, ամա իմ երեխին մի բրդուճ հաց էլ ա չեն տալիս,— ասում էր տատս ու երկու ձեռքով շանչ անում Օհանջանենց տան կողմը։

Պանիրն ու հացն ուտելուց հետո տատս մի ծնկանը դնում էր իմ գլուխը, մյուսին՝ Համազինը և հին-հին հեքիաթներ պատմում՝ երբեմն ախ ու վիշ անելով, որ Համազը չի լսում։

Ես նայում էի Համազի սև, խոշոր աչքերին ու ինձ թվում էր, թե նա էլ ինձ նման լսում, հասկանում է տատիս պատմած կախարդական հեքիաթները։ Երբեմն Համազը կիսատ էր թողնում հեքիաթը, համբուրում տատիս չորացած ձեռքն ու իմ մազերը խառնելով՝ հեռանում, կորչում մթության մեջ... Տատս փեշով սրբում էր արցունքներն ու նրա հետևից նայելով ասում։

— Աստված քեզ օգնական լինի, Համա՛զ... Կաղ Օհանջանի օխտը տղի կյանքից խլի՝ քոնի վրա դնի, հա՜...

***

Պարզ ու տաք օրերին Համազն ինձ հետը տանում էր սարերը։ Ոչխարը քշում էինք Սանդերի ձորը, որտեղ խոտը հասնում էր մինչև իմ ծունկը, իսկ աղբյուրների ջրերը սառն էին ինչպես ձյունը։ Լալ Համազը ուռենու կամ մասրենու ճյուղից շվի էր շինում, տալիս ինձ, իսկ ինքը գետափի քարերին նստած երկար, երկար նայում էր հոսող ջրերին.... Կեսօրին, երբ ոչխարը մակաղում էր քերծերի շվաքներում, նա բռնում էր մեծ կուրծ ունեցող այծերից մեկին, կթում քարե սանդի մեջ ու իր հացը բրդելով մեջը ուտում ինձ հետ։

Երբեմն էլ նա իր հին պղնձե թավայի մեջ կաթ էր բերում տատիս ու ինձ համար։ Մի քանի անգամ ես տեսել եմ, թե ինչպես կաղ Օհանջանը կամ նրա տղաները ինձ հաց տալու համար սաստիկ ծեծել են Համազին։

— Էդ բոլշևիկի լակոտին ինչի՞ ես հաց տալիս, շուն-շան որդի՛,— գոռում էին նրանք։

Այդ պահերին ես կուչ էի գալիս տատիս փեշի տակ ու լաց լինում, հետո տատիս հարցնում էի, թե ինչ մարդիկ են բոլշևիկները։

— Սո՛ւս,— երկյուղած ասում էր տատս,— բոլշևիկը քու հերն է, սո՛ւս։

Տատս Համազի մարմնի կապտած տեղերին ինչ-որ հեղուկ էր քսում ու շանչ անում դեպի կաղ Օհանջանի տունը։

***

Մի օր էլ գյուղում սաստիկ իրարանցում ընկավ։ Եկեղեցու զանգերն սկսեցին ղողանջել, Շոր ջրի կողմից հրացան կրակեցին. մարդիկ վազեցին դեպի գյուղի հրապարա-

կը՝ Զարելին տախտը ու խռնվեցին, աղմըկեցին այնտեղ։

Կեսօր էր։ Ես սովորականի պես նստած էի մեր քարափին ու այնտեղից քարեր էի նետում ներքևում փրփրացող գետի մեջ և աչքս ճանապարհին, սպասում, թե երբ կգա տատս։ Նա եկավ սովորականից շուտ։ Զառիվերով բարձրանալիս սաստիկ հևում էր, բայց առաջվա նման մեջքից կռացած չէր ու քայլում էր արագ։ Ես նրա խամրած աչքերում ուրախություն տեսա։

— Նանի՛, ինչի՞ են ժամի զանգերը տալիս,— հարցրի ես։

— Բոլշևիկը գալիս ա։

— Ապի՞ն։

— Հա՛, սո՛ւս,— նա փակեց բերանս։

Եկեղեցու զանգերի ձայնը խուլ արձագանք էր գտնում ժայռերի խոռոչներում, մեր քարանձավում ու հեռավոր ձորերում։ Զարելին տախտից գզիրը որքան ուժ ուներ ձեն էր տալիս ինչ-որ մեկին ու պահանջում, որ սա անմիջապես ներկայանա քյոխվին։ Եկեղեցու գավթում սև կաչաղակի նման թևերը թափահարում էր Տեր Մինասը։

Իրարանցում էր նաև կաղ Օհանջանենց բակում։ Նրա յոթ տղաները թամբեցին ձիերն ու արևի տակ պսպղացնելով իրենց զենքերը՝ սլացան ներքև։ Մեր քարափի գլխին հանկարծակի տնկվեց կաղ Օհանջանն ու ձեռքերը կողքերին կանթած գոռաց տատիս վրա.

— Հը՜, ազգի դավաճանի մե՛ր, հրեն, բոլշևիկ տղադ գալիս ա։ Էսօր-էգուց գլուխը կկտրենք ու կբերենք քեզ։ Հա՛-հա՛-հա՛...

Տատս առանց մի բան ասելու կաղ Օհանջանին, բռնեց իմ ձեռքն ու արագ մտանք մեր քարանձավը։

Իջավ տագնապալի ու ահավոր գիշերը։ Թխպերը պատել էին ամբողջ երկինքը ու մեր անձավի երդիկից ոչ մի աստղ չէր երևում։ Շները ողջ գիշեր հաչում էին անցող-դարձողների վրա։ Փողոցից անվերջ դոփյուն, ձիերի վրնջոց էր լսվում։ Տատս ինձ սեղմել էր իր սառը կրծքին ու անվերջ ինչ-որ բան էր մրմնջում ինքն իրեն։ Նա ինձ ստիպում էր, որ քնեմ, նույնիսկ սպառնում էր, թե քարափի տակ գիշերողը կգա, եթե ես իսկույն չքնեմ. բայց իմ քունը հակառակի պես չէր տանում։

Գիշերվա կեսին եկավ Լալ Համազը, մի կտոր հաց ու պանիր տվեց ինձ ու իսկույն դուրս եկավ։ Ես անմիջապես կերա հաց ու պանիրն ու քնեցի միայն լուսադեմին։

Երեք օր Լալ Համազը չերևաց մեր քարափին ու ես սովից մատներս էի ծծում։

***

Մի գիշեր էլ ես արթնացա մեջքիս տված ուժեղ հարվածից։ Աչքերս բաց արի ու իմ առաջ տեսա կաղ Օհանջանի կեռ թրերի նմանող բեղերն ու արնակալած աչքերը։ Մեր քարանձավում խռնվել էին ինձ բոլորովին անծանոթ մարդիկ՝ երկար բեղերով, թրերով ու հրացաններով։ Ոմանք գոռգոռում էին, մյուսները քաշքշում տատիս։ Այդ տեսնելով ես սարսափահար կպա տատիս ծնկներին, բայց մի ուժեղ ձեռք ինձ պոկեց նրանից ու շպրտեց մի կողմ։

Տատս կանգնել էր կաղ Օհանջանի առաջ ու դողում էր՝ ձմեռը ջուրն ընկածի պես։

— Ո՞ւր է բոլշևիկ տղադ, քավթա՛ռ,— բռունցքի կարճ հարվածներ տալով տատիս բերնին, հարցնում էր կաղ Օհանջանը,— ո՞ւր, է, ո՞ւր է, ասա, եկել է գյուղ, բոլշևիկի թղթեր է բերել, որտե՞ղ ես թաքցրել։

— Գիտում չեմ, տեսել չեմ,— արյուն թքելով պատասխանում էր տատս։

Նրան քարշ տվին դուրս։ Ինձ թվաց, թե նրան տանում են՝ քարափից ցած գցեն. որքան ուժ ունեի ճչացի, բայց մի լայն ձեռք փակեց բերանս, որից վառոդի ու ձիու քրտինքի հոտ էր գալիս։

Լույսն արդեն բացվում էր։ Խմհատի լեռնալանջի կողմից հրացանների ու թնդանոթների կրակոցների ձայն էր գալիս։ Մեր քարափից վեր երբեմն պայթում էր ինչ-որ ահռելի մի բան ու ժայռերը փլվելով թանձր փոշի էին արձակում։ Կրակում էին նաև մեր գյուղից։ Դեռ երեկ տատս ականջ էր դնում այդ կրակոցներին, և երբ Խմհատի լանջից կրակում էին, նա «ջան» էր ասում, իսկ գյուղի կողմից կրակողներին չանչում էր ու «չոռ» կանչում։

Տարիս քարշ տվին դեպի Օհանջանենց տան կողմը։ Այնտեղ ասեղ գցելու տեղ

չկար։ Օհանջանենց բակումն էին գզիրը, քյոխվան, պրիստավը ու էլի ուրիշ մարդիկ։ Տեր Մինասը խաչը հանած ինչ-որ անեծքներ էր ասում, ցույց տալով Խմհատի լեռնալանջը։ Անդադար գնում-գալիս էին զինված մարդիկ, չարացած դեմքերով ու արնակալած աչքերով։ Ես սարսափից ուզեցի փախչել, թաքնվել մեր քարանձավում, բայց տեսնելով, որ տատիս տարան Օհանջանի տունը՝ վազեցի այնտեղ։

Ամբոխի մեջ երևում էր տատս։ Նրա գլխին շալ չկար ու ես առաջին անգամ տեսա, որ տատիս մազերը նման են նոր եկած ձյունի։



...Որքան ուժ ուներ հարվածեց նրա գլխին...

Չգիտեմ, թե ինչպես մագլցեցի կաղ Օհանջանի տան բակի պարիսպը, որի վրա արդեն շատ երեխաներ էին թառած։ Տատս այս անգամ երևաց Օհանջանենց պատշգամբում, հետո մեկը բռնեց նրա ճերմակ մազերից ու քարշ տվեց ներս։

— Ախր այս խեղճ պառավն ի՞նչ է արել, որ տանջում եք, ի՞նչ մեղք ունի,— ասաց պատի տակ հավաքված կանանցից մեկն ու թաշկինակը տարավ աչքերին։

— Թե կարողանում են, թող գնան հրեն Խմհատի լանջին կռվողների հետ խոսեն, թե չէ ձեռքից գնացած պառավն ի՞նչ կանի որ,— ասաց մի ուրիշը։

— Ա՛խ, անիծվածնե՜ր։

Չնայած կանայք խոսում էին շատ ցածր ու երկյուղով, բայց ես գլխի ընկա, որ Խըմհատի լանջից կրակողը իմ հայրն է ու տատիս էլ նրա համար են տանջում։ «Վայ, տատի ջան» — մտածեցի ես, «բա քեզ որ բանտարկեն, ինձ ո՞վ պիտի հաց տա»։ Այդ պահին ես զգացի, որ մի վատ, շատ վատ բան պիտի կատարվի ինձ հետ ու սկսեցի բարձրաձայն լաց լինել։ Մեկը ներքևից մորակը թափահարեց վրաս ու ես ձայնս կտրեցի։

Տատս նորից երևաց պատշգամբում։ Նրա դեմքն արյունոտ էր, կուրծքը պատառոտված։ Նա հազիվ էր ոտքի վրա մնում։ Հանկարծ նա ձեռքերը տարածեց ու գոչեց դարմանալի սուր ձայնով.

— Ե՜կ, Աբեթնա՜կ, բալա՜ս, եկ ավերակ արա կաղ Օհանջանի տունն ու տե՜ղը...

Նա չկարողացավ շարունակել։ Նրա գլխին թրով հարվածեց կաղ Օհանջանը։ Բակում հավաքված մարդիկ ետ-ետ գնացին։ Կանայք ճչալով ետ փախան։

— Ազգի դավաճանին փրկություն չկա,— ամբողջ ձայնով գոռաց կաղ Օհանջանն ու կեռ թուրը պսպղացնելով մեկ էլ իջեցրեց տատիս գլխին։ Տատս ձեռքերը տարավ դեպի գլուխը, բայց թրի երրորդ հարվածը կտրեց նրա մատները... Օհանջանը մի անգամ էլ հարվածեց տատիս ու պատշգամբից նրան հրեց ցած։

Հենց այդ պահին լսվեց մի սոսկալի մռնչոց։ Պատշգամբում երևաց Լալ Համազը։ Նրա դեմքը սևացել էր, աչքերը լայնացել էին ու քիչ էր մնում դուրս թռչեին բներից։ Նա հանկարծ նետվեց դեպի կաղ Օհանջանն

ու ձեռքի խարչերկաթով որքան ուժ ուներ հարվածեց նրա գլխին։

— Տեղին է,— ամբոխի միջից լսվեցին խուլ ձայներ։

Կաղ Օհանջանը սոսկալի ձայն հանեց ու անշնչանալով փռվեց գետնին...

Մեկը ատրճանակով կրակեց Լալ Համազի վրա։ Խարչերկաթն ընկավ Համազի ձեռքից ու նա կտրված ծառի նման օրորվելով տապալվեց ցած ու ընկավ տատիս կողքին...

Մեկն ինձ պոկեց պատից ու տարավ... Ես չիմացա, թե այնուհետև ինչ եղավ կաղ Օհանջանի բակում։

***

Միայն հինգ օր հետո, երբ գյուղում այլևս կրակոցների ձայն չէր լսվում և երբ Զարեհի տախտում՝ բարձր սյան վրա փողփողում էր կարմիր դրոշը, ինձ հանեցին թոնրի միջից, որտեղ թաքցրել էին ու ես առաջին անգամ տեսա հորս։ Տատս ու Լալ Համազն այլևս չկային։ Նրանց կողք-կողքի թաղել էին գերեզմանատանը...

Թաղել էին։ Բայց իմ մտքում միշտ մնում է գանգուր մազերով, արևախանձ դեմքով Լալ Համազը, որ ինձ համար պանիր ու հաց էր բերում, նստում մեր քարափին, գլուխը դնում տատիս ծնկանն ու համր իմաստությամբ նայում իրիկնային մշուշի մեջ պարուրվող լեռներին...



# ԿԱՐԱՊԸ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Գ. ՅԱՐԱԼՅԱՆԻ

Վերջանում է սպիտակ գիշերը. սկսվում է ցերեկը։ Այս անցումն այստեղ աննկատելի է. սպիտակ գիշերները ոչնչով չեն տարբերվում ցերեկից։ Արևը մտնում է շատ կարճ ժամանակով, բայց օրը չի մթնում. միայն զգացվում է օդի ջերմաստիճանի նվազումը և ինչ-որ գունաթափ մշուշ իջնում է ջրերի վրա։ Փշատերև ծառերը մի պահ սևին են տալիս, իսկ կեչիների ճերմակ շերտերը բաց երկնագույն են դառնում։ Թռչուններն ու գազանները քուն են մտնում։ Քնած է տայգան, քնած է քամին, արթուն է միայն տայգայի որսորդը։ Նա լարված ուշադրությամբ հետևում է տայգայի յուրաքանչյուր ձայնին։

Ահա արևելքում նշմարվում է թույլ մանուշակագույն մի երանգ։ Ինչ-որ տեղ վայրի բադերի երամը իջնում նստում է լճակի վրա։ Երկնքով թռչում են փասիանաբադերը, կռանչող ջրսույզները։ Անասելի ճիչ ու աղաղակով արթնանում է եղնահավը. լըսվում է խլահավի կանչը։

— Սկսվեց,— զգուշացրեց Տատոն։

Որսորդը մտնում է իր տարերքի մեջ։ Նա լսում ու տարբերում է ձայները, թռչունների թռիչքի ձևը, ուղղությունն ու արագությունը։

Երկնքով անցավ սագերի երամը։ Զոկչի Տատոն նայեց նրանց հետևից և ասաց.

— Սագերը թռչում են քամու հետ, օրը կփոխվի։

Եվ իսկապես քիչ հետո ամպերը կուտակվեցին լեռների վրա։ Սառը քամի բարձրացավ։ Օրը մթնեց։ Զյուն եկավ։ Մենք տեղավորվեցինք հոլիկի տակ։ Զոկչի Տատոն երեխայի պես ժպտում էր և կոշտ ձեռքերով աշխատում էր բռնել ձյան փաթիլները։

— Սագերն ու բադերը միշտ թռչում են քամու դեմ,— սկսեց չուկչի Տատոն։— Երբ նրանք թռչում են քամու հետ, փետուրները բացվում են և քամին սառեցնում է նրանց։ Եթե քամին կողքից փչի, նրանք թռչել չեն կարող։

Մինչդեռ չուկչի Տատոն իրեն հատուկ դանդաղկոտությամբ կպատմեր բադերի թռիչքի ձևերի և ուղղությունների մասին, քամին դադարեց, ամպերը հեռացան և օրը նորից բացվեց։ Երկու փասիանաբադ աղմուկով անցան լճակի վրայով. նրանք պտույտ գործեցին. չուկչին կրակեց։

— Սա բադաքլոր է, դրա համար էլ սրան խփեցի,— ասաց նա։

— Իսկ ինչպե՞ս իմացար։



Չուկչի Տատոն այնպես հափշտակված էր նրանց գեղեցկությամբ...

— Բադաքլորը գեղեցիկ է. գրավիչ փետուրներ ու հաստ ձայն ունի, իսկ միսը մոխրագույն է, սիրուն չէ, բայց դուրեկան է։ Որսորդը բադահավին միշտ էլ կճանաչի և նրանց վրա չի կրակի։ Նրանք ձու կածեն, թուխս կնստեն, բադերը կշատանան։ Թող գնա, թռչի, նա փոքրիկ բադիկներ կունենա։

Այդ պահին երկու ճերմակ խոշոր թռչուններ սկսեցին պտտվել լճակի վրա։

— Կարապներ,— շշնջաց չուկչին,— դրանք շատ զգույշ են, չշարժվես. թող նրստեն, հեռվից են գալիս, շատ են հոգնել...

Կարապները շրջան էին գործում և ամեն մի պտույտից հետո մի փոքր իջնում ջրի վրա։ Ահա նրանք սկզբում կախեցին երկար ու կարմիր ոտներն ու իջան։ Չուկչի Տատոն զգուշությամբ հրացանը դրեց մամուռի վրա։ Կարապները ձգեցին իրենց երկար ու ճերմակ պարանոցները, ուշադրությամբ զննեցին շրջակայքը և թեթև ու անձայն սահելով մոտեցան իրար։ Չուկչի Տատոն այնպես հափշտակված էր նրանց գեղեցկությամբ, որ չնկատեց, թե ինչպես ես հրացանս բարձրացրի։ Կրակոցի ձայնը շանթահարեց նրան, վեր թռավ տեղից և ամբողջ ուժով գոչեց.

— Ի՞նչ արեցիր, անհոգի՛ մարդ։ Քո ձեռքը ո՞նց բարձրացավ, ի՞նչ արեցի՞ր...

Ես զարմանքից քարացա։ Բնազդաբար ետ քաշվեցի նրանից։ Նա դողում էր հուզմունքից։ Բևեռային գիշերների նման մութ աչքերը լի էին վշտով։ Նա ուզում էր ինչ-որ բան ասել, բայց չկարողացավ։ Վեր կացավ, շուռ եկավ և արագ քայլերով հեռացավ ինձնից։ Երկինքն անամպ էր ու պարզ։ Ջյունը հալչում էր, փոքրիկ վտակներ դառնում և կորչում մամուռի մեջ։ Խլահավը նորից սկսեց իր կանչը։ Ինչ-որ տեղ վախեցած բադերի մի երամ աղմուկով բարձրացավ ջրից։ Հեռու կեչիների մեջ վերջին անգամ երևաց չուկչի Տատոյի երերացող ուրվագիծը։ Արևը դեռ զենիթում էր, բայց օրը մոտենում էր իր վախճանին։ Ծանր ու անսպասելի տպավորություններից սթափվելուց հետո նայեցի լճակին։ Ջրերը խաղաղ էին ու անխռով. թեթև հովը մանր, կապույտ կոհակների վրա շարժում էր ձյունի պես ճերմակ կարապներին։ Նրանցից մեկը բարձրացավ ջրից, պտույտներ գործեց, իսկ մյուսը՝ սահելով հանգիստ, թախծոտ աչքերով նայում էր դեպի վեր։ Ես մոտեցա հոլիկին, վերցրի չուկչի Տատոյի հրացանը ու քայլեցի դեպի կեչիների անտառը։ Երբ փոքր ինչ հեռացել էի, ետ նայեցի, կարապները լճակի վրա սահում էին երազի նման թեթև, երկուսն էլ ճերմակ, երկուսն էլ մեկտեղ։

Երեք օր շարունակ ես սպասում էի չուկչի Տառոյին, բայց նա չկար, չէր գալիս: Գնացի նրա յուրտը: Երբ մոտեցա դռանը, ինձ ասացին, որ չուկչին պառկած է, վատ է զգում իրեն: Յուրտը արտաքինից մի սովորական վրան էր, իսկ ներսից պատած էր եղջերուների մորթիներով: Մուտքի վրա կախված էր շատկերիկի գորշ, մոխրագույն մորթին, հատակին փռված էին արջի մորթիներ: Չուկչի Տառոն պառկած էր քնապարկի վրա, վրանի ձախ անկյունում: Մոտեցա, վար դրի հրացանը: Չուկչին դանդաղությամբ վեր քաշեց կոպերը, խեթ-խեթ նայեց ինձ ու դառնությամբ լի սրտով շշնջաց.

— Ինչո՞ւ ես եկել, քեզ ո՞վ թողեց իմ յուրտը, անհոգի՛ մարդ:— Ես պատասխան չգտա:— Կարապներին լափեցի՞ր:

— Նրանք լողում են լճակում,— շտապեցի պատասխանել ես,— նրանցից մեկն է միայն վիրավոր:

— Ինչ ասացի՞ր,— գոչեց Տառոն և նստեց.— կենդանի՞ են ասացիր:

— Այո,— պատասխանեցի ես:

Չուկչի Տառոն շտապով վեր կացավ, կանչեց տղաներին, հագնվեց ու դուրս եկավ յուրտից:

***

Մի ժամից հետո նրանք մոտենում էին յուրտին: Չուկչի Տառոյի գրկում ես տեսա վիրավոր կարապին, նրա ձյան պես ճերմակ իրանը և կախված կարմիր տոտիկները: Նրանք մոտեցան: Իսկ երկնքի կապույտ լազուրում աղիողորմ կանչյունով պտտվում էր նրա ընկերուհին:

— Խոստացիր, որ երբեք չես կրակի կարապների վրա:

Ես խոստացա: Չուկչին ետ քաշեց շատկերիկի մորթին, ժպտաց և ինձ հրավիրեց յուրտը:

# ՊԸՐԸՆԸԽԸՂ

ՎԱՋԳԵՆ ՏԱԼՅԱՆ

— Եկե՜ք, եկե՜ք, պարան խաղա՜նք...
Հենց ասացի՝
Եկավ տիկնիկը, թե՝ — Լա՜վ.
Եկավ շնիկը, թե՝ — Հա՛ֆ.
Կատուն եկավ՝ — Մռռ ու մռ՜ռռ...
Խոզուկն եկավ՝ — Խռռ ու խռ՜ռռ...
Ե՛վ ծիտիկը ոստոստան,
Ե՛վ մուկիկը ճռճռտան.
Ես, փափկամազ մռռանը
Պտտեցինք իմ պարանը:
Տիկնիկն արեց՝ — Հո՛պ, — թռավ.
Շնիկն արեց՝ — Հա՛ֆ, — թռավ:
Փոքրիկ ծիտիկն էլ թռավ, խլվլաց,
Հետո կանգնեց պարանին, ծլվլաց:
Իսկ խոզուկը ասաց՝ — Խռ՜ռռ...
Կաղին տվեք ինձ մի բռ՜ռռ.
Էլ ի՞նչ պարան, էլ ի՞նչ բան.
Ես հո խոզ չեմ մի անբան.

Ու հաստավիզ խռռանը
Հանկարծ քաշեց,
Առուն գցեց պարանը:
Փիսիկն այնպես բարկացավ,
Որ չանչ արեց ու հասավ.
Շնիկն ու նա միասին
Խոզուկին դուրս արեցին:
Նորից եկավ մուկիկը
Ու թռվռան ծիտիկը,
Փիսոն՝ պոչը թափ տալով,
Եվ շնիկը պար գալով...
Խաղը նորից տաքացավ,
Ինչքա՜ն լավ էր, ինչքա՜ն լավ.
Ի՞նչ ծիծաղ էր, ի՞նչ քրքիջ...
Թռչկոտեցինք մենք մի քիչ
Եվ ասացինք.
— Այս խաղը
Շարունակենք մենք վաղը:

# ԾՈՎԻ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ

Հռչակավոր ծովանկարիչ Իվան Կոնստանտինովիչ Այվազովսկին ծնվել է Ղրիմի Թեոդոսիա քաղաքում, 1817 թվականին: Վաղ երևացին տղայի նկարելու ընդունակությունները: Բայց նա թուղթ ու ներկ չուներ, դրա համար էլ նկարում էր ցանկապատերի վրա և տների պատերին:

1830 թվականին Այվազովսկին ընդունվեց Սիմֆերոպոլի գիմնազիան, իսկ երեք տարի հետո՝ Պետերբուրգի Արվեստների ակադեմիան: Այնտեղ նա սովորում էր այն ժամանակվա հայտնի պեյզաժիստ պրոֆեսոր Մ. Ն. Վորոբյովի մոտ և կարճ ժամանակում ծովանկարչության մեջ մեծ վարպետության հասավ:

Արվեստների ակադեմիայում եղած ժամանակ Այվազովսկին ծանոթացավ ռուս նշանավոր մարդկանց հետ: Նրա վրա անջնջելի տպավորություն գործեց 1836 թվականին Պուշկինի հետ ունեցած հանդիպումը: Պուշկինը դիտեց երիտասարդ նկարչի աշխատանքները: Դրանք շատ դուր եկան բանաստեղծին: Ռուս կուլտուրայի առաջավոր գործիչների հետ ունեցած



*«Իններորդ ալիք»:* *Գործ Ի. Կ. ԱՅՎԱԶՈՎՍԿՈՒ*

շփումը խոշոր ազդեցություն թողեց Այվազովսկու վրա:

Եվ նա իր ամբողջ կյանքը նվիրեց ծովի հոյակապ գեղեցկության պատկերմանը: Նրան անվանում են «Ծովի բանաստեղծ», «Ալիքների երգիչ»: Նա մանկությունից սիրում էր ծովի տարերքը, որի ափերին, Ղրիմում անցկացրեց իր կյանքի մեծ մասը: Այվազովսկին համաշխարհային հռչակ ստացավ իր կենդանության օրոք: Նա իր նկարները ցուցադրեց Հռոմում, Նեապոլում, Վենետիկում, Լոնդոնում, Փարիզում, Ամստերդամում և ամենուրեք արժանացավ բարձր գնահատականի:

Ի. Կ. Այվազովսկին թողել է վեց հազար նկար, որոնց մեջ նա պատկերել է ծովը օրվա տարբեր պահերին, տարբեր վիճակների ժամանակ: Նրա ամենալավ նկարներից մեկը՝ «Իններորդ ալիքն» է: Այվազովսկին պատկերել է լուսաբացը ծովում՝ անեղ փոթորկից հետո: Խորտակված նավի կայմի բեկորների վրա մի քանի մարդիկ են երևում: Նրանք կենդանի են մնացել նավի խորտակումից հետո: Փոթորիկն անցել է, բայց ծովը դեռ չի հանգստացել: Ալիքները թռչում են մեկը մյուսի վրայով, ջրի զմրուխտե ցայտերը թափանցված են ծագող արևի ոսկյա ճառագայթներով:

Այվազովսկու մյուս հայտնի նկարը «Սև ծովն» է: Նկարիչը պատկերում է ծովի մուգ խորությունը, կանաչագորշավուն ծանր ալիքները, արծաթագույն փրփուրը նրանց կատարներին և անափ ծովային հեռուն: Այվազովսկու լավագույն նկարներից են նաև՝ «Ալիքների միջև», «Նավաբեկություն», «Փոթորիկը Այա հրվանդանի մոտ» և այլն:

Այվազովսկու ստեղծագործության մեջ հատուկ տեղ են գրավում ռուսական նավատորմի մարտական սխրագործություններին նվիրված նկարները: Դրանցից հետաքրքիր են «Նավարինյան ճակատամարտը» և «Չեսմենի ճակատամարտը»: Դրանք նկարված են հայրենասիրական մեծ զգացմունքով: Նկարիչը պատկերել է թյուրքական նավատորմիղի կործանման վերջին պահը: Ռուսները հրդեհել են թյուրքական նավերը, թյուրքական նավատորմիղը այրվում է, պայթում են նավերը, զոհվում մարդիկ:

Այվազովսկին մեռավ 1900 թվականին Թեոդոսիայում: Նկարիչն ուներ իր պատկերասրահը, որը կտակեց հարազատ քաղաքին: Թեոդոսիայի պատկերասրահը այժմ ունի նկարչի 400 ստեղծագործություն և նրա նկարների ամենալրիվ հավաքածուն է:

Այվազովսկու նկարների մի մասը գտնվում է Երևանի Պետական պատկերասրահում:

*Ն. ԱՂԱՄԱԼՅԱՆ*




Պ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Մենք ուզում էինք դիտել արևի մայրամուտը։ Դրա համար խմբակով դուրս էինք եկել բաց դաշտ։

Երբ արևը իջավ լեռների հետևը, այնտեղից կարմիր բոցերի ճառագայթները վեր բարձրացան։

— Տեսնո՞ւմ եք,— ասաց մեր ղեկավար ընկեր Մարտիրոսյանը,— արևի ճառագայթները դեռ լուսավորում են մեր հետևի լեռներն ու բարձր ամպերը, իսկ մեզ՝ ոչ։ Լեռներն ու ամպերը մեզնից շատ բարձր են, իսկ նրանցից վերև տարածվում է մթնոլորտը։ Ուրեմն արևը դեռ լուսավորելու է օդի բարձր շերտերը, իսկ այդ շերտերն էլ՝ մեզ։ Սա վերջալույսն է, հետո կսկսվի կիսախավարը՝ մթնշաղը։

Երկնակամարում հետզհետե սկսեցին երևալ աստղերը։ Վերջալույսին երևում էին միայն պայծառ աստղերը, իսկ մթնշաղին նաև թույլ պայծառության աստղերը։ Վրա հասավ գիշերը։ Որոշեցինք արևածագից երկու ժամ շուտ գալ դաշտ՝ լուսաբացը դիտելու։ Նշանակված ժամին բոլորս էլ հավաքվեցինք նույն տեղը։

Բևեռային աստղի օգնությամբ մենք որոշեցինք երկրի կողմերը և մեր ուշադրությունն ուղղեցինք դեպի արևելք։

— Սկսվել է աղջամուղջը՝ առավոտյան մթնշաղը,— ասաց ընկեր Մարտիրոսյանը։

Երկնակամարից աստիճանաբար անհետանում էին աստղերը։ Արևելքում երկինքը տարբեր երանգներ ստացավ։ Մենք արևը չէինք տեսնում, բայց նրա ճառագայթներն արդեն լուսավորում էին Արարատի գագաթը, իսկ հետո՝ Արարատյան դաշտը։ Վերջապես արևն սկսեց վեր բարձրանալ։

— Աղջամուղջի և արշալույսի երևույթը շատ պարզ ձևով կարելի է պատկերացնել այսպես։ Մայրամուտից հետո կամ ծագելուց առաջ արևը որքան հորիզոնին մոտ է լինում, այնքան շատ է լուսավորում մթնոլորտի՝ մեզնից վեր գտնվող շերտերը և մենք էլ շատ լույս ենք ստանում։ Իսկ որքան ցածր է լինում հորիզոնից, այնքան քիչ է լուսավորում մեր գլխից վեր գտնվող օդը։ Որոշ սահման անցնելուց հետո, արևի ճառագայթները մեզ բոլորովին չեն հասնում. տիրում է գիշերային թանձր խավար։ Այդ ժամանակ նրանք լուսավորում են երկրի մյուս կողմը։

Արշալույսին նախորդող և վերջալույսին հետևող ժամանակամիջոցը՝ կոչվում է աղջամուղջ կամ մթնշաղ։

Աղջամուղջը լինում է քաղաքացիական և աստղագիտական։ Քաղաքացիական աղջամուղջի ժամանակ դեռ բավականին լույս է լինում և լապտեր վառելու առանձին կարիք չի զգացվում։ Հետո սկսվում է աստղագիտական աղջամուղջը և տևում է այնքան ժամանակ, մինչև արևը հորիզոնից ցածրանում է 18 աստիճան։ Առավոտյան նույնպես աղջամուղջի այդ տեսակները կրկնվում են։ Պետք է նշել, որ լուսնի լույսից էլ աղջամուղջ է առաջանում, բայց նա լինում է շատ ավելի թույլ, քան արևինը։

Վերջալույսի և արշալույսի ժամանակ, արևմտյան և արևելյան հորիզոնի մոտ առաջանում է տարբեր գույնի երանգավորում։ Արշալույսի պայծառությունն ու երանգավորման գույնը կապված է եղանակից, մթնոլորտում եղած փոշու մասնիկների քանակից և նրանից, թե որքան գոլորշի և սառցի բյուրեղիկներ կան մթնոլորտում։ Որքան օդը չոր է, այնքան արշալույսը վառ ոսկեգույն է դառնում։ Բայց նա էլ միատեսակ երանգավորված չի լինում, քանի որ մթնոլորտում միշտ տարբեր քանակի փոշու, ջրի ու սառույցի մասնիկներ կան։

Աղջամուղջի և արշալույսի տևողությունը կախված է տարվա ժամանակից և տեղի աշխարհագրական լայնությունից։ Հասարակածում աղջամուղջն ու արշալույսը կարճ են տևում, իսկ բևեռներում՝ երկար։ Մեզանում, ձմռանը դրանք տևում են մոտ քառասուն րոպե, իսկ ամռանը՝ մեկ կամ երկու ժամ։ Աղջամուղջն ու արշալույսը, ընդհանրապես, երկարացնում են ցերեկվա տևողությունը. իսկ բևեռային շրջաններում և նրա մոտակայքում, ամառվա ընթացքում արևը հորիզոնից շատ չի ցածրանում։ Այդ պատճառով էլ աղջամուղջն ու արշալույսը երկարում են և տևում ամբողջ գիշերը։

Լենինգրադում ապրիլից մինչև օգոստոս, իսկ Մուրմանսկում մարտի վերջից մինչև սեպտեմբերի վերջը լինում են սպիտակ գիշերներ։ Ձեր հուշատետրում կգրեք այս բոլորը,— վերջացրեց իր խոսքը ընկեր Մարտիրոսյանը։

# ԱՄԵՆ ԻՆՉԻ ՄԱՍԻՆ

## ԲՈՒ



Ով եղել է գյուղերում, կոլտնտեսության անասնաբուծական ֆերմաներում, գիշերը մնացել դաշտերում ու անտառներում, նա գիտե, որ մութն ընկնելուն պես որսի են դուրս գալիս նաև բուերը:

Գիշերային բուերն ունեն փափուկ փետուրներ և դրա համար նրանց թռիչքն անաղմուկ է: Ուրիշ ոչ մի թռչուն այնպիսի գլուխ չունի, ինչպես բուն: Նրա բիբերը, կատվի բիբերի նման շատ են մեծանում, և ցանկացած ժամանակ կարող են նեղանալ ու դառնալ աննկատելի:

Բուն անաղմուկ թռչում է թփերի վրայով և ուշադիր ականջ դնում: Ահա մոտերքում հազիվ լսվում է միայն ծվծվոցը: Բուն կանգնում է, թևերը կախում օդում, լսում, լսում ու ցած ընկնում: Նրա կպչուն ճանկերը իսկույն բռնում են որսը:

Հաշվել են, որ ամառը բուն ոչնչացնում է մինչև հազար մուկ ու դաշտային այլ կրծողներ: Դաշտամուկն ամառը ուտում է մի կիլոգրամ հացահատիկ: Ամեն մի բու պահպանում է մոտավորապես մի տոննա հաց:

Բվեճի համար մուկը շատ փոքրիկ ավար է. նա ավելի խոշոր որս է փնտրում, նապաստակներ, անտառային խոշոր թռչուններ: Բվեճը նույնիսկ ճանկում է փշոտ ոզնիներին: Նա չի խնայում նույնիսկ իր ցեղակցին՝ բուին: Բայց բվեճն իրեն լավ չի զգում ցերեկը: Քնած բվեճին տեսնելով, սարյակները, ագռավները, կաչաղակներն ու թռչունները հարձակվում են նրա վրա: Նրանց ձայների վրա թռչում, գալիս են նորանոր թռչուններ: Նրանք հավաքվում են բվեճի շուրջը ճռվողում, կանչում... Ցերեկը բվեճը մտնում է եղևնիների թավուտը, փորձում թաքնվել փոքր ճյուղերի մեջ:

## ԱՅԾԱԿԻԹ

Հենց որ մթնում է, անտառի եզրին ու բացատներում, անտառային ճանապարհների վրա երևում է այծակիթը: Այդ թռչունն ամբողջ օրը նստած է ծառի ճյուղին կամ բնին:

Այծակիթն ունի մեծ բերան և բոլորովին փոքրիկ կտուց: Բերանի ծայրերին երկար կոշտ մազեր կան: Այդ կոշտ մազերի պատճառով այծակիթի բերանն ավելի մեծ է թվում: Դրանով դժվար է ավարը գետնից վերցնելը, բայց շատ հարմար է որսը բռնել օդում թռչելիս:

Այծակիթն ամենաճարպիկ թռչողն է: Ինչե՞ր ասես, որ նա չի անում օդում: Մերթ սլանում է թփերի վրայով, մերթ մի ակնթարթ նստում անտառի ճանապարհին:

Այդ թռչունին անվանում են նաև գիշերաշրջիկ:



Երբեմն երեկոները այծակիթը պտտվում է կովերի, ոչխարների կամ այծերի շուրջը, նստում գետնին, հենց կենդանիների ոտքերի մոտ: Այդ ժամանակ թռչունը որսում է անասունների մոտ կամ կրծերի շուրջը հավաքված ճանճերն ու միջատները:

Այստեղից էլ ծագել է այն միտքը, թե թռչունը անասուններ, հատկապես այծ է կթում: Դրա համար էլ թռչունին «այծակիթ» են անվանել: Այծակիթները ոչնչացնում են մեծ քանակությամբ գիշերային թիթեռներ, այդ թվում և վնասատու թիթեռներ: Նրանք մեր անտառների պաշտպաններն են:

Ս. ՕՐԲԵԼՅԱՆ

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ԵՐԿՈՒ ՊԱՏԱՆԵԿՈՒԹՅՈՒՆ»

Կարա-Կումի խորքերում, անասնապահական աուլում Վելմուրադ անունով մի ծերունի է ապրում: Երիտասարդական տարիներին Վելմուրադը ներկա է լինում հնադարյան մի հանճարեղ ձեռագիր գրքի ընթերցանությանը: Աղքատ Վելմուրադը զիջում է իր միակ ուղտը և ձեռք բերում այդ հազվագյուտ ձեռագիրը: Այդ թանկագին ձեռագիրը մոտ 40 տարի մնում է սնդուկում մետաքսյա թաշկինակի մեջ փաթաթված: Ո՞վ պետք է կարդար, երբ ամբողջ աուլում գրագետ մարդ չկար:

Վելմուրադը և իր կինը իրենց զավակին՝ Մուրադջանին սովորելու են տալիս, որ նա կարդա հազվագյուտ գիրքը: Մուրադջանը վեց տարի հետո ոչ մի բան չսովորած վերադառնում և սկսում է հովվություն անել:

Սովետական կարգերի հաստատումից հետո աուլում դպրոց է բացվում, ուր գրել-կարդալ է սովորում նաև Մուրադջանը: Նա ծնողների համար սկսում է կարդալ հռչակավոր բանաստեղծ Մախթում Կուլիի գրքի ոսկե տողերը: Հոր համաձայնությամբ, մեր գիտնականները տպագրում են ձեռագիրը, թարգմանում: Իմաստուն գիրքը շատ ընթերցողների սեփականությունն է դառնում:

Այս է Ն. Սարիխանովի «Գիրքը» պատմվածքի համառոտ բովանդակությունը: Պատմվածքը տպագրված է վերջերս հայերեն լույս տեսած «Երկու պատանեկություն» գրքում:

Այս ժողովածուի պատմվածքները և բանաստեղծությունները ցույց են տալիս սովետական ազնիվ հայրենասերների լավ աշխատանքը, նրանց նպատակին հասնելու ձգտումը, կամքի մեծ ուժը, պատկերացում են տալիս թուրքմեն ժողովրդի ազգային վերածնության, ռեսպուբլիկայի հզոր վերելքի մասին:

## «ԼԱՎ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՆԵՐԸ»

Սևաչյա Արան և սպիտակ, ոլորուն պոչով Քոթոթը գետի ափով այգի էին գնում: Քարի տակ մի կապույտ ծաղիկ երևաց: Արան քաղեց մանուշակը, իսկ Քոթոթը իր հաչոցով հավանություն տվեց: Հետո երևաց ծառի մի բույն՝ մեջը երկու չալտիկ ձու: Արան ձեռքով նշան արեց՝ չդիպչել, իսկ Քոթոթը «Հա՛ֆ» արեց: Մի քիչ էլ գնացին՝ ժայռի տակ մի բան խշխշաց. քարի տակ գալարվում էր մի փոքրիկ օձ: Արան ասաց՝ «Քոթո՛թ, պետք է սրան սպանել» և փայտ վերցրեց: Իսկ Քոթոթը «Հա՛ֆ» անելով վրա ընկավ:

«Ուրեմն, մանուշակը քաղեցին, ծտիկին ձեռք չտվին, օձին սպանեցին: Ա՛յ, այսպես են լինում լավ ճանապարհորդները»...

«Լավ ճանապարհորդները» գրքի հեղինակն է Խ. Գյուլնազարյանը: Նա պատմում է նաև թխսի, ուլիկի, շերամի և շատ այլ բաների մասին:

Լավ ճանապարհորդները իրենց խաղերում արտացոլում են տեսածները:

Ահա, մի խումբ երեխաների հետ Արան խաղում է կենդանաբանական այգի: Բակում կա շատրվան, կան ծառեր, երեխաները բերում են գուտապերչե, ռետինե և այլ խաղալիքներ և հարևանի կատվին: Քոթոթն էլ հո կա ու կա: Փափուկ հացի միջուկից պատրաստում են փիղ, կրիա, օձ: Բայց նրանք գալիս և տեսնում են, որ ավազանի մոտ նստել է կատուն և հանգիստ ուտում է փղին...



Սակայն անհաջողությունները չեն տխրեցնում Արային և մյուսներին: Նրանք համառ են, կամքի տեր և վաղը ավելի մեծ ու գեղեցիկ գործեր կկատարեն:

ԱՐՄ. ԹԱՄԱԶՅԱՆ

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

### «ՇԱԽՄԱՏ»
(ՉԱՅՆՎՈՐԴ)

1. Ռուսական շախմատային դպրոցի հիմնադիր, 2. Շախմատային ֆիգուրա, 3. Սովետական գրոսմայստեր, 4. Ֆիզիկական վարժությունների և խաղերի ամբողջություն, 5. Շախմատի քայլ, 6. Շախմատային հանդիպում, 7. Շախմատի խաղի անվանումը նրա ծագման շրջանում, 8. Կուլտուր-լուսավորական հաստատություն, 9. Շախմատային խաղի տեսակ, 10. Շախմատում հետագա քայլեր մտածելու ժամանակի պակասություն, 11. Սովետական գրոսմայստեր, 12. Սպորտի տեսակ:




### ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱ՛Ն ԽՆԴԻՐ

Այս վանդակներում գրեցեք մեկական տառ այնպես, որ ամեն մի հորիզոնական շարքում կարդացվի



առաջին՝ Վոլգայի վտակ, երկրորդ՝ գետ Սովետական Միությունում, երրորդ՝ գետ Լիտվայում, չորրորդ՝ քաղաք Ռումինիայում:

Երբ պահանջվող անունները ճիշտ գտնվեն, ապա դրանք նույնպիսի կարգով կարող եք կարդալ նաև ուղղահայաց շարքերում:

*Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*

### ՈՐՍՈՐԴ՛Ն ՈՒ ԱՐՋԸ

Որսորդը դուրս եկավ իր բնակավայրից և ճանապարհվեց դեպի հարավ: Անցնելով հինգ կիլոմետր նա դարձավ դեպի արևելք և գնաց նորից չորս կիլոմետր ճանապարհ: Այդտեղ, հանկարծ նա հանդիպեց մի արջի: Սպանելով արջին, որսորդը դարձավ դեպի հյուսիս և շարունակեց իր ճանապարհը: Հինգ կիլոմետր անցնելուց հետո նա հասավ այնտեղ, որտեղից որ սկսել էր իր ճանապարհորդությունը:

Ի՞նչ եք կարծում, ո՞րտեղի բնակիչ էր որսորդը և ի՞նչ գույն ուներ նրա սպանած արջը:

### ԿԱՐՈ՞Ղ ԵՍ...



1) 1, 2, 3, 4, 5, 6, 10, 12, 15, 20 և 30 թվերը դասավորել այս շրջանակներում այնպես, որ ուղիղ գծի վրա ընկած երեք շրջանակների միջի թվերի արտադրյալը հավասար լինի 60-ի:



2) Այս հինգ քառակուսիներից պատրաստեցեք մի մեծ քառակուսի: Կիսել կարելի է միայն չորս քառակուսին, ընդ որում յուրաքանչյուր քառակուսին ոչ ավելի, քան երկու մասի:

# ԽԱՂԵՐ

## ԳՐԱՎԵԼ ՏԵՂԵՐԸ

Պիոներները բաժանվեցին երկու մասի: Ամեն մի կողմում քսան հոգի: Նրանք շարք կանգնեցին դեմ-դիմաց, միմյանցից հինգ քայլ հեռու: Ջոկատավարը երկու շարքին էլ 1-ից մինչև 20 համար բաժանեց: Համարները գրված էին տաս քառակուսի սանտի-



մետր մեծության թերթիկների վրա: Խաղացողները այդ համարները գնդասեղով փակցրին իրենց կրծքին:

— Դուք կանգնել եք խառը ձևով,— ասաց ջոկատավարը:

Իսկապես մի շարքում № 1-ից հետո № 7 էր, նրա կողքին՝ 13-ը, մյուս շարքի հենց սկզբում 19 համարն էր, նրա մոտ՝ 11-ը և այլն:

— Հենց որ հրահանգեմ՝ գրավել տեղերը,— շարունակեց ջոկատավարը,—դուք պետք է դասավորվեք համարների հերթականությամբ: Որ կողմն արագ և ճիշտ շարժվեց, նա էլ կլինի հաղթողը:

— Գրավե՛լ տեղերը,— հրահանգեց ջոկատավարը:

Շարքերում շարժում սկսվեց: Միքանի վայրկյան հետո ջոկատավարը նկատեց, որ ձախ կողմի շարքն արդեն դասավորվել է:

— Այսպիսով հաղթող կողմը...

Ջոկատավարը խոսքը չկարողացավ վերջացնել: Մյուս շարքից բացագանչություններ լսվեցին:

— Ճիշտ չէ, 16-ը իր տեղը չի:

Եվ իսկապես, 16 համարը կանգնել էր 14-ից հետո:

Մի շարքը մի քիչ ուշ շարժվեց, բայց երեխաները կանգնել էին ճիշտ: Եվ հաղթանակը նա տարավ:

Դուք էլ խաղացեք այս խաղը:

## ՑԱՏԿԱՊԱՐԱ՛ՆՈՎ

— Այսօր խաղերը կկազմակերպի Սեդան,— ասաց օղակավար Գոհարիկը:

Սեդան գործի անցավ: Նա երկու երեխայի ձեռքը տվեց ութ մետրանոց պարանի ծայրերը, նրանց կանգնեցրեց իրարից հինգ-վեց մետր հեռու և ապա դառնալով առաջին հնգյակին ասաց.

— Շարքով մոտեցեք պարանին: Երբ պարանը կսկսեն պտտել, դուք միասին պետք է ցատկեք, չորս անգամ մի ոտքով, չորս անգամ՝ երկու ոտքով: Խաղում կհաղթի այն հնգյակը, որի մասնակիցները քսան անգամ ցատկելուց հետո կանգ չեն առնի և չեն շփոթվի:

Մարգոն ու Լենան սկսեցին պտտել պարանը և առաջին հնգյակը սկսեց ցատկել: Աղջիկները շատ լավ էին ցատկում:

Առաջին անգամ երկու հնգյակն էլ չկարողացան քսան անգամ ցատկել: Միշտ մեկն ու մեկը սխալվում էր և բոլորին խաղից հանում: Երկրորդ անգամ, երկրորդ հնգյակին հաջողվեց խաղը շահել: Խաղի վերջում օղակավար Գոհարիկը հրահանգեց.

— Այժմ բոլորը պետք է ցատկեն: Ով մինչև վերջը մնաց, նա էլ կհամարվի հաղթողը:



Մի քանիսը յոթ-ութ ցատկումից հետո կորցնելով համաչափությունը ոտքերը խփեցին պարանին և դուրս եկան խաղից: Միայն Հասմիկն էր մնացել: Երեխաները սկսեցին ծափահարել հաղթողին:

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## Պատասխանում ենք

Մեր ամսագրի այս տարվա երկրորդ համարում տպագրված աշխարհագրական կռոսվորդի պատասխանն այս է.

### ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Դեղին, 2. Տայգա, 4. Թերեք, 5. Յամալ, 7. Արգենտինա, 8. Ֆինլանդիա, 11. Տիբեր, 12. Վեզուվ, 17. Տոկիո, 18. Դնեպր, 21. Պսկով, 22. Օսակա։

### ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

1. Սևան, 6. Լենինգրադ, 9. Արտեկ, 10. Դանիա, 13. Նիգեր, 14. Պլզեն, 15. Դելտա, 16. Ինգուլ, 10. Ինդոս, 20. Սնդիկ, 23. Միսսիսիպի, 24. Գորկի։

Ճիշտ պատասխանել են՝ Շ. Աղամյանը, Է. Մաթևոսյանը, Կ. և Լ. Հարությունյանները (Ղափան), Հ. Զաքարյանը, (Սիսիան), Ռ. Հակոբյանը (Իջևանի շրջան), Հ. Գալստյանը, Խ. Սարգսյանը, Վ. Գալստյանը, Ժ. Մանուչարյանը, Մ. Գաբրիելյանը (Սևանի շրջան), Ա. Պապոյանը, Է. Խանեսյանը (Ալավերդի), Հ. Ավագյանը (Ճամբարակ գյուղ), Գ. Մանուչարյանը (Գորիսի շրջան), Ս. Զաքարյանը (Վեդու շրջան), Թ. Հովհաննիսյանը (Կիրովականի շրջան), Օ. Հայրապետյանը (Բասարգեչար), Է. Նազարյանը (Ադրբեջանական ՍՍՌ), Ս. Բարսեղյանը (Ապարան), Ռ. Մանուկյանը, Լ. Գալստյանը, Յու. Բարաջանյանը (Երևան) և շատ ուրիշներ։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝ նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*




*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 10073։ Պատվեր 530։ Տիրաժ 5000։ Տպագրական 2 1/4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 28/IV—1954 թ.։*

*Գլխհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## Երգիծանքի ուժով

«Այո՛, ես սիրում եմ քեզ, հեռավո՜ր, ոչ ոքի կողմից ձեռք չտված երկիր: Ես սիրում եմ քո ընդարձակությունը... Եվ երբ իմ գրիչը հաճախ դիպչում է քո օրգանիզմի այնպիսի լարերին, որոնք արձակում են անդուրեկան և կեղծ հնչյուն, ապա դա քո նկատմամբ ջերմ համակրանքի պակասից չէ, այլ նրանից հատկապես, որ այդ հնչյունները տխուր և հիվանդագին են արձագանքում իմ հոգում»:— Այսպես է գրել ռուս մեծ գրող երգիծաբան, ռևոլյուցիոն-դեմոկրատ Ն. Շչեդրինը իր Հայրենիքի



մասին: Ն. Շչեդրինի իսկական անունը Միխայիլ Եվգրաֆովիչ Սալտիկով էր:

Նա ծնվել է 1826 թվականին հարուստ կալվածատիրոջ ընտանիքում: Նա մանկության տարիներին տեսավ ռուս ճորտ գյուղացիների անտանելի շահագործումը կալվածատերերի կողմից, տեսավ և ատեց ճորտատերերին և ճորտատիրական իրավունքը:

Շչեդրինը սովորել է Ալեքսանդրովյան լիցեյում, որտեղ սովորել էր և Պուշկինը: Ավարտելուց հետո Շչեդրինը 1844 թվականին ծառայության է մտնում: Նա մոտենում է իր ժամանակի ռևոլյուցիոն երիտասարդությանը, որոնք տարված էին Բելինսկու առաջավոր մտքերով: Նա ձգտում էր նվիրվել գրական գործունեության: Եվ ահա գրեց մի վիպակ, որի համար աքսորվեց Վյատկա:

Շչեդրինը մոտ քսան տարվա իր հարկադրական ծառայության ընթացքում պայքարում էր կաշառակերության, ապօրինի արարքների և ուրիշ անարդարությունների դեմ:

Այդ տարիները Շչեդրինի համար մեծ դեր կատարեցին: Նա ավելի լավ ճանաչեց կյանքը, հատկապես ցարական կարգերը և սուր, մերկացնող երգիծանքի ուժով քննադատեց իր երկերում («Նահանգական ակնարկներ», «Մի քաղաքի պատմություն», «Պարոնայք Գոլովլյովներ», «Հեքիաթներ» և այլն):

Շչեդրինը սիրում էր իր հայրենիքը և ռուս ժողովրդին: Ահա այդ էր պատճառը, որ մեծ երգիծաբանի երկերը հնչում էին որպես հզոր պայքարի կոչ ճորտատիրական կարգի դեմ:

Վ. Ի. Լենինը Շչեդրինի երգիծանքը որպես սուր զենք օգտագործել է թշնամիների դեմ մղած պայքարում:

Այս տարի լրանում է Շչեդրինի մահվան 65 տարին:

## Ժողովրդական երգիչը

Սուլեյմանը ծնվել 1869 թվականին Դաղստանի մի խուլ լեզգինական աուլում՝ Աշագա-Ստալում: Այդ աուլի անունից էլ նա ստացավ իր ազգանունը՝ Ստալսկի: Նա աղքատ գյուղացու զավակ էր: Վաղ որբանալով, դաստիարակվում է ուրիշ կնոջ մոտ: Երբ նա յոթ տարեկան էր, հայրը երկրորդ անգամ ամուսնացավ: Խորթ մայրը չար էր և դրա համար մի քանի տարի հետո Սուլեյմանը հեռացավ տնից, բատրակ դարձավ: Նա թափառեց Կովկասում, Միջին Ասիայում: Վերադառնալով իր հայրենի աուլը, Սուլեյմանն ամուսնացավ: Նա չքավոր էր, ապրում էր խրճիթում: Մի անգամ լսելով, թե ինչպես են աշուղները երգում սոխակի մասին, Սուլեյմանն ասաց. «Սատանան տանի, ախր այդ բոլորը վաղուց նստած է իմ հոգում»: Վերադառնալով տուն, նա ստեղծեց իր առաջին երգը: Նա երգում էր իր թափառումների և աշխատանքի մասին:

Այդ ժամանակ նա արդեն քառասուն տարեկան էր: Նա հասկացավ, որ երգը հարկավոր է մարդկանց, նրանց հիշեցնում է երջանկության և պայքարի մասին:

Սուլեյմանի երգերը հասան ժողովրդի սրտին:

Ստալսկին ուրախությամբ դիմավորեց Հոկտեմբերյան ռևոլյուցիայի լույսը:

Դաղստանում սովետական կարգերի հաստատումից հետո հարստացավ Ստալսկու երգերի բովանդակությունը: Նա իր լավագույն երգերը նվիրեց Հայրենիքին, նրա փառքը և հպարտությունը կազմող լավագույն մարդկանց: Նրա «Ես պետք է երգեմ բոլշևիկներին», «Երգ Կարմիր Բա-



նակի մասին» բանաստեղծությունները, «Խոհեր Հայրենիքի մասին» և «Դաղստան» պոեմները՝ սովետական պոեզիայի լավագույն նմուշներից են: Նրանց մեջ իշխում է ժողովրդական իմաստությունը:

Ստալսկին արժանացել էր Դաղստանի ժողովրդական բանաստեղծի բարձր կոչման:

Ռևոլյուցիայից առաջ Ստալսկու բանաստեղծությունները չէին տպագրվում: Նա իր հին երգերը մեր օրերին է հասցրել հիշողությամբ: Դրանք գրի առնվեցին և դարձան սովետական ժողովրդի սեփականությունը:

Մ. Գորկին բարձր է գնահատել ժողովրդական մեծ երգչի ստեղծագործությունը և նրան համարել է «20-րդ դարի Հոմերոս»:

Ս. Ստալսկին մեռավ 1937 թվականին: Այս տարի լրանում է ժողովրդական բանաստեղծի ծննդյան 85 տարին:

ԳԻՆԸ 2 Ռ.

# ՊԱՀՊԱՆԵՑԵՔ ՓՈՂՈՑԱՅԻՆ ԵՐԹԵՎԵԿՈՒԹՅԱՆ ԿԱՆՈՆՆԵՐԸ

**1. ՄԻ՛ ԲԱՐՁՐԱՑԵՔ ԵՎ ՄԻ՛ ԻՋԵՔ ՏՐԱՆՍՊՈՐՏԻՑ ԸՆԹԱՑՔԻ ԺԱՄԱՆԱԿ:** Մի՛ երթևեկեք տրամվայների և տրոլեյբուսների, ավտոբուսների և ավտոմեքենաների ելուստներին ու ոտնատեղերին կանգնած:

**ԿԱՆԳԱՌՈՒՄ ՏՐԱՄՎԱՅԻՑ ԻՋՆԵԼԻՍ ՆԱՅԵՑԵՔ ԱՋ:** Տրամվայի գծերն անցեք մոտոռային վագոնի առջևից, որպեսզի տեսնեք հանդիպակաց տրամվայը:

Տրոլեյբուսը, ավտոբուսը և ավտոմեքենան շրջանցեք հետևի կողմից և ճանապարհ տվեք առաջ սլացող տրանսպորտին:

**2. ՉԿԱՐԳԱՎՈՐՎՈՂ ԽԱՉՄԵՐՈՒԿՆԵՐՈՒՄ, ՓՈՂՈՑՆ ԱՆՑՆԵԼԻՍ, ՀԱՄՈԶՎԵՑԵՔ ԱՆՑՄԱՆ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՄԵՋ:** Դրա համար, նախ՝ նայեցեք դեպի ձախ, ապա հասնելով փողոցի մեջտեղը՝ դեպի աջ: **ՈՉ ՄԻ ԴԵՊՔՈՒՄ ՄԻ՛ ԿՏՐԵՔ ԵՎ ԱՆՑԵՔ ՃԱՆԱՊԱՐՀԸ,** երբ ավտոմեքենան, ավտոբուսը, տրոլեյբուսը և տրամվայը մոտիկ են, քանի որ տրանսպորտը միանգամից արգելակել հնարավոր չէ:

**3. ԽԱՉՄԵՐՈՒԿՆԵՐՈՒՄ, ՈՐՏԵՂ ՇԱՐԺՈՒՄԸ ԿԱՐԳԱՎՈՐՎՈՒՄ Է, ՍՊԱՍԵՑԵՔ ԼՈՒՍԱՖՈՐԻ ԿԱՆԱՉ ԱԶԴԱՆՇԱՆԻՆ, ԿԱՄ ՇԱՐԺՈՒՄԸ ԿԱՐԳԱՎՈՐՈՂ ՄԻԼԻՑԻՈՆԵՐԻ ԹՈՒՅԼԱՏՐՈՂ ՆՇԱՆԻՆ:** Փողոցն անցնելիս ուշադրությամբ հետևեցեք դեպի աջ շրջադարձ կատարող տրանսպորտին:

**4. ՔԱՅԼԵՑԵՔ ՄԻՄԻԱՅՆ ՄԱՅԹԵՐՈՎ:**

**ՓՈՂՈՑՆ ԱՆՑԵՔ ԽԱՉՄԵՐՈՒԿՆԵՐՈՒՄ** և այնտեղով, որտեղ «Անցում» ցուցանակ և փողոցի երթևեկելի մասում սպիտակ ներկով նշված ուղիներ կան, այն էլ այն ժամանակ, երբ կդադարեցվի տրանսպորտի շարժումը:

**ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵՑԵՔ ԵՎ ԽԻՍՏ ԿԵՐՊՈՎ ԿԱՏԱՐԵՑԵՔ ԱՅՍ ԿԱՆՈՆՆԵՐԸ:**

**ԴԺԲԱԽՏ ՊԱՏԱՀԱՐՆԵՐԻՑ ՊԱՀՊԱՆԵՑԵՔ ՁԵՐ ԿՅԱՆՔԸ ԵՎ ԱՌՈՂՋՈՒԹՅՈՒՆԸ: ՓՈՂՈՑՈՒՄ ԵՂԵՔ ԿԱՐԳԱՊԱՀ. ԴՐԱՆՈՎ ԴՈՒՔ ԿՆՊԱՍՏԵՔ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԱՆԽԱՓԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻՆ:**



